cover

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ




# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ
## Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ



ԹՐԳՄ.

Հ. ԳՐԻԳ. Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1891.





# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ

## Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ




ՎԻԵՆՆԱ
*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*
1891.

ԴԵՄԵՏՐԻՈՍ ՏԱՆԻ

# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ

## Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ



ԹՐԳՄ.

Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Վ. ԳԱԼԸՄՔԵԱՐԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1891.

# ԱԶԴ

Մատեանս[1] թարգմանութեամբ հայ հասարակութեան ներկայացընելով՝ չենք ուզած մնալ բովանդակութեանն լիովին հաւանութիւն ընծայել։ Մասնական եւ կարեւոր գործ մը երեւցած է մեզ երկասիրութիւնս, որ իւր նոր եւ բազմակողմանի տեղեկութիւններովը՝ Պուքովինայի հայ գաղթականութեան պատմութեան ամբողջական ստուերագիծը կը պարզէ ընթերցողին առջեւ։ Հեղինակն չմիացեալ յունադաւան եկեղեցական ըլլալով՝ բնական է որ տեղ տեղ համեմատ չի խօսիր ազգին մերթ մէկ եւ մերթ միւս մասին կրօնական զգացմանց։

Մեր գործն էր ներկայացընել երկասիրութիւնն ամբողջ ինչպէս որ է, քանի մը տեղ միայն ծանօթութիւններ աւելցընելով։

ԹԱՐԳՄԱՆԻՉԸ



[1] Dan D., Die orientalischen Armenier in der Bukowina. Czernowitz 1890. [Verbesserter Separatabdruck aus der „Czernowitzer Zeitung" 1890. N. N. 81, 86, 95, 101, 104, 116, 122, 129, 137, 141, 145, 147.]

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Պուքրվինայի հետաքրքրական ազգայնութեանց մէջ ստուգիւ ամենակարեւոր դիրքն ունին Արեւմտեան Հայք:

Գործոյս մէջ ջանացի նոյն ազգին եւ անոր եկեղեցւոյն վերաբերեալ ամէն պատմական նիւթերն հաւաքել, — որ ոչինչ նուազ դժուարութիւն ունէր, վասն զի մինչեւ ցայսօր ոչ ոք ի մասնաւորի այս ազգին պատմութիւնն հետազօտած է. — նոյնպէս ջանացի այս ազգին պատմութեան եւ կրօնին վերաբերեալ սխալ կարծիքներն ուղղել, եկեղեցական եւ աշխարհական անծանօթ կարգ ու սովորութիւններն ամէնուն ծանօթացընել, եւ շատ բան մոռացութեան ծոցէն ազատել եւ ապագայ սերնդեան աւանդել:

Կը խոստովանիմ, որ գործոյս մէջ շատ բաներու վրայ մանրամասն եւ ճշդագոյնս պէտք էր գրել, սակայն կրնամ յար-

զոյ ընթերցողին ներողամտութիւնը խնդրել, մանաւանդ որ ինծի համար եթէ անհնարին անկարելի չէր մանրամասն ուսումնասիրել՝ զէթ շատ դժուարութիւններով. եւ արգելքներով կապուած էր՝ պաշտօնատեղւոյս մայրաքաղաքէն եւ այլ մատենադարաններէն շատ հեռու ըլլալուն համար :

*Նունզինեց, Յունիս, 1890:*

ԴԵՄԵՏՐԻՈՍ-ՏԱՆ



# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Հայկական պետութիւնք հնագոյն ժամանակներէ վեր Ներքին Ասիայէն եւ Ափրիկէէն եկող ազգայնութեանց ասպարէզ էին: Մողոլք, Եգիպտացիք, Պարսիկք, Տաճիկք եւ Թաթարք արշաւեցին այս երկիրներն, աւար առին, աւերեցին եւ նաեւ ատեն ատեն տիրապետեցին:

Այս անմարդավայել անգթութիւններէ զերծանելու նպատակաւ, այլեւայլ ժամանակներ Հայոցմէ շատերն իրենց հայրենիքէն մեկնեցան, իրենց ինչքն ու ստացուածքն անյագ տիրապետողներու թող տալով, ուրախութեամբ՝ որ լոկ իրենց կեանքն ազատել կարող եղան, աշխարհիս ամէն կողմը ցրուեցան, եւ երբ նաեւ Հայոց մայրաքաղաքն Անի 1313ին երկրաշարժէ կործանեցաւ, եւ յետոյ 1378ին Եգիպտացւոց ձեռքն ինկաւ, թէեւ Հայք քաջութեամբ եւ երկայն ատեն ընդդիմացան, եւ երբ վերջին հայ թագաւորն Լեւոն Զ Գաղղիա փախած էր իւր թշնամեաց դէմ օգնութիւն փնտռելու համար, այն ատեն Հայոցմէ հազարաւորներ փախան եւ

եկան Անատօլու, Եգիպտոս, Հնդկաստան, Կ. Պոլիս, Սեւ ծովու ափունքն, եւ ի մասնաւորի Խրիմ, Ռուսաստան, Լեհաստան, Կալիցիա, Լիթուանիա, Թրակիա, Մէօսիա, Մոլտավիա եւ Վալաքիա հաստատուեցան։

Այսօրս Հայք աշխարհիս ամէնէն աւելի սփռեալ ժողովուրդն են, վասն զի այլեւայլ երկիրներ եւ վաճառաքաղաքներու[1] մէջ գլխաւորաբար վաճառական Հայերու կը հանդիպինք, ինչպէս ի Պոմպէյ,. Մատրաս, Կալկաթա, Պարմա, Սիամ, Սինկափոր, Ճավա, Սումադրա, Պոռնէօ, Քանդոն, Պոխարա, Քոքանդ, Խիվա, Քաշէմիր, Լահոր, Աֆղանիստան, Ջուղա, Պարսկաստան, Գահիրէ, Աղէքսանդրիա, Հապէշիստան Ասորիք, Տաճկաստան, Ռուսաստան, Իտալիա, Հունգարիա, Կալիցիա, Ռումանիա եւ Պուքովինա՝ ուր Հայք ամէնահին բնակիչներէն են։

---

[1] Նաեւ Ամսդերտամ յառաջագոյն շատ ծաղկեալ հայ գաղթականութիւն մը կար, որ գոհարավաճառութեան եւ սեպհական գործարանաց մէջ ականագործութեան կը պարապէր. հոս նաեւ սեպհական անուանի տպարան մ'ունէին Հայք եւ շատ եկեղեցիներ, որոնցմէ մին մինչեւ ցայսօր կը կենայ ամայացեալ։

## ԳԼՈՒԽ Ա.

*Պատմութիւն Պոկուտիայի արեւելեան Հայոց:*

Հայք շատ կանուխ ժամանակաւ հաստատուած են այսօրուան Աւստրիական կայսրութեան երկիրներն, եւ ի մասնաւորի ի Լեհաստան:

Յամին 1062 Ռուսիոյ Իզասլաւ (Izaslaw) իշխանին հրաւիրանօքն՝ 20.000 Հայք Անի քաղաքէն եկան ի Ռուսիա՝ կռուելու ընդդէմ Բոլովցիացւոց (Polowzer, որ են՝ Rumanen = Romänen), եւ ետ չդարձան ի Հայս, այլ հաստատուեցան ի Քիէվ եւ յետոյ Բոտոլաքի-Կամենիցի մէջ [1], եւ անկէ սփռեցան գրեթէ բովանդակ այն երկրին վրայ:

Յամին 1280 Լեւոն Տանիլովիչ իշխանն կոչեց Հայերն, որ գան եւ իւր 1270ին հիմնարկած Լեմպէրկ քաղաքը բնակին*: Հայք այս տեղ սեպհական վարչութեան[2] (magistrat) մը տակ էին, եւ այնչափ շատ՝ որ Գասիմիր Գ. Մեծն († 5 Նյ. 1370[3]) յամին 1367 իրենց եր-

* Արդէն անկէ յառաջ Հայք ըստ մասին կը բնակէին Լեմպէրկի մէջ ըստ Ստեփ. Ռոշքայ (Ժամանակագրութիւն, ամ 1277,) որ կ'ըսէ. "Յայսմ ամի Հայք բնակէին ի Լէօպօլիս, եւ էր վանքն անդէն Սր. Աննայի. զի գտանի ի նմին Եկեղեցւոջ գերեզմանաքար գրեալ Թվ. ՉԻԶ, որ է Քրիստոսի՝ 1277:„ Ծ. Թ.

կրորդ եպիսկոպոսին՝ Գրիգոր Մեծին՝ իշխանութիւն շնորհեց որ իւր աթոռն Լեմպէրկ փոխադրէ[4]: Յետոյ 1379ին Հայք հոս նաեւ մեծամեծ արտօնութիւններ ընդունեցան[5]:

Ի Լեմպէրկ եւ առ հասարակ ի Լեհաստան Հայք 1500էն սկսեալ թաթարերէն կը խօսէին. այս լեզուն յետոյ նաեւ Կալիցիոյ ատեանները մտաւ, եւ նոյն իսկ Լեմպէրկի վճռոց մատեանն (Decretalenbuch) առ սէր Հայոց՝ 1630էն մինչեւ 1641 թաթար լեզուաւ կը գրուէր[6]:

Նաեւ ի Հունգարիա շատ կանուխ ժամանակաւ հաստատուեցան Հայք, վասն զի հունգարացի ժամանակագիրն կ'ըսէ. “Բաց աստի Հունգարիա եկան թէ՛ Կէյզա Դքսին (972—995) թէ՛ Ստեփանոս Սուրբ թագաւորին (997—1038) ժամանակ, եւ թէ՛ այլ թագաւորաց ատեններն Պոհեմիացիք, (Գնչու) Պոլոնիացիք, Յոյնք, Սպանիացիք, Իսմայէլացիք, Պէսք, Հայք եւ այլն, որոնք երկայն ժամանակ պետութեան մէջ բնակելով, — թէեւ իրենց ծագումը չէր գիտցուեր, — այլեւայլ ամուսնութեամբք խառնեցան Հունգարացւոց հետ եւ ազնուականութիւն ու սերունդ ունեցան[7]:„ (Այլեւայլ ազգաց ի Հունգարիա մուտն, Մասն Ա. Գլ. 12:)

Ի Հունգարիա արդէն 1243ին արտօնութիւններ ընդունեցան Հայք, զորոնք Պէլա Դ նորոգեց, նաեւ Լատիսլաւ Դ թագաւորին 1281ին տուած մէկ վաւերագրոյն մէջ կը յիշուի “երկիր Հայոց„ եւ “մենաստան„ մը[8]:

Նաեւ ի Սիպէնպիւրկէն (ի Թրանսիլվանիա) Հայք կանուխ ժամանակներ հաստատուած են. վասն զի 1355ին կը յիշուի "եպիսկոպոս Հայոց Գուլմախի„* (de Tulmachy)[9]:

Հայք դէպ ի Մոլտաւիա եւ Վալաքիա դիմեցին միեւնոյն ժամանակ՝ երբ Բոսոլպի-Կամենից գացին, ուստի ԺԱ դարուն գաղթեցին, այս է 1046ին, երբ Մոնոմաքոս Յունաց կայսրն Հայաստան աւրշաւեց, եւ 1064ին՝ երբ Պարսիկք Անի մայրաքաղաքին տիրեցին[10]:

Յետոյ գաղթականութիւններ եկան 1342ին[11], երբ Պարսիկք Անի մայրաքաղաքը վերստին առին[12], եւ 1418[13], 1475[14] եւ 1606[15] տարիներուն մէջ:

Հարաւային Մոլտաւիա բնակող Հայերն Կ.Պոլսէն եկան, եւ տաճկերէն կը խօսէին. իսկ վերին Մոլտաւիոյ Հայերն ուղղակի հայրենիքէն եկան, եւ հայերէն կը խօսէին[16]:

Մոլտաւիոյ հիւսիսակողմանքն բնակող Հայոց գալուստն Սուչավայի Հայոց հաստատուն աւանդութեամբն ալ կը հաստատուի, որուն համեմատ՝ Հայոցմէ շատերն 1313ին իրենց մայրաքաղաքին երկրաշարժէ կործաններէն՝ գաղթած եկած են Սուչավա[17]: Նաեւ Թրանսիլվանիոյ Հայք կ՚աւանդեն՝ թէ Անի քաղաքէն գաղթած են[18]:

Ռումանացւոց ամենանշանաւոր հնագէտներէն մին՝ Աշտէու[19], կը հաստատէ՝ որ նոյն իսկ Վալաքիոյ Արճէշ քաղաքն եւ հոյակապ եկեղե-

---

* Այս եպիսկոպոսին նիքն այժմ զանուած է ի Հունգարիա, որուն վրայ կը խօսինք ուրիշ անգամ: Ծ.Թ.

ցին Հայք հիմնարկած եւ շինած ըլլան, եւ իւր կարծիքն՝ որ ծանօթ ռումանիացի պատմագէտ Քսէնոբոլէն բաւական զօրաւոր կերպով հերքուած է[20], կը հիմնէ Արճէշ[21] անուան վրայ, եւ կ'ըսէ՝ թէ Հայք Վանայ ծովուն մէջ իրենց ունեցած համանուն քաղաքին յիշատակին համար՝ օտար երկրի մը մէջ իրենցմէ շինուած այս քաղաքն ալ նոյնպէս կոչեցին:

Նաեւ Լեմպէրկէն բազմաթիւ հայ վաճառականներ եկան մերձաւոր Մոլտաւիա, եւ ի մասնաւորի՝ այն ժամանակի մայրաքաղաքին՝ Սուչավայի մէջ հաստատուեցան, ուր եռանդեամբ միջնավաճառութեան կը պարապէին[22]:

Մոլտաւիոյ իշխանն Պետրոս Մուշատ[23] (1375—1391), որ Լեհաց բարեկամ էր եւ անոնց Վլատիսլաւ թագաւորին հետ խնամացած, 1384ին Մոլտաւիոյ եւ Սուչավայի վաճառական Հայերն ի հաւատոյս Լեմպէրկի արեւելեան հայ եպիսկոպոսին իրաւաբանութեան ենթարկեց[24]:

Այս կարգադրութեան համեմատ կը գտնենք՝ որ Աւետիք անուամբ եպիսկոպոս մը Քոտոլքի-Կամենիցի եւ Մոլտաւիոյ Հայոց կ'առաջնորդէր* 1415—1445[25]:

---

* Ստեփ. Ռոշքա (Ժամկգր. 1398) կ'աւանդէ հետեւեալն. "Տէր Յոհաննէս Առաջին Արքեպիսկոպոսն Լէօպոլսի Հայոց (քանզի յառաջ քան զսա, զայլ ոք Արքեպիսկոպոս ոչ ուրեք կարացաք գտանել): Սա ոչ միայն Լէհցւոց, այլ եւ Պուղտանաց երկրի Հայոց Առաջնորդ էր, որպէս յայտ է ի մագաղաթեայ կոնդակէն կառուցման եկեղեցւոյն Սբ. Նիկողայոսի, որ ի Կամէնից, յորում այսպէս գրի: Տամ զգիրս զայս Նահանգիս Առաջ-

Հայոց կանխագոյն ժամանակաւ Մոլտաւիա հաստատուած ըլլալուն ուրիշ ցուցում մըն են իրենց շատ հին եկեղեցիքն ի Պոթուշան՝ յամին 1350, եւ Յեաշ՝ յամին 1395[26]։ Պոթուշանի եկեղեցին արձանագրութիւն մը չունի, բայց Եաշի եկեղեցին ունի արձանագրութիւն յամին ՊԽԴ այն է՝ 1395։ Այս արձանագրութիւնն է. "Շնորհօք եւ ողորմութեամբն Աստուծոյ հիմնարկեցաւ Եաշու Սուրբ Աստուածածնայ եկեղեցին ձեռամբ եկեղեցպան Խաչգոյին եւ Սիս-

---

նորդացն, եւ այժմ է Տէր Յոհաննէս Արքեպիսկոպոս Ռուզաց եւ Օլախաց աշխարհի, հոգեւոր առաջնորդ նահանգիս եւ մեզ: Եւ գրեցաւ ի թվին Հայոց ՊԽԵ Մարդի ԻԵ: Զաա յիշէ եւ Աւետիք Արքեպիսկոպոսն, ի վայր յամի 1446. ի կոնդակ:„

Այս Աւետիքի մասին կը գրէ Ռոշքա (1445). "Տէր Աւետիք երրորդ Արքեպիսկոպոսն մեր Լէօպօլսի, զոր Կամէնիցացիք թղթովք իւրեանց եւ Եպիսկոպոսին Լեհաց, նաեւ Պարոն Ստեփանին. որ էր Դուքս Ռուզաց ի տոհմէն Գօրիօվիչաց, առաքեցին յէջմիածին առ Գրիգոր կաթողիկոսն առ ի հաստատել Առաջնորդ: Զոր կաթողիկոսն հաստատեալ եւ զՍէչովու թեմն նմա ստորադրեալ, պատասխանէ, զկնի ոմանց բանից, գրելով: Եկն Տէր Աւետիք եպիսկոպոս սիրելի որդիդ մեր առ մեզ, եւ եբեր զծեր Վկայական թուղթն, եւ զհոռոմ եպիսկոպոսին նշանն; եւ զՊարոն Ստեփանին: Եւ մեք զՏէր Աւետիքդ, որ ձեզ Եպիսկոպոս էր բնական, այլ կրկին, եւ վերստին հաստատեցաք, եւ զՍէչով քաղաքն իւր զեղանովն շնորհեցաք իւրն սեպհական թեմ եւ վիճակ: Թվ. ՊՂԴ. Օգոստ. ԺԵ: Աստուստ յայտ է թէ Արքեպիսկոպոսունքն մեր Լէօպօլսի, իրաւաբար՝ մակազրին Եպիսկոպոսունք Պուղտանաց Հայոց. եւ ոչ միայն այս Աւետիքն, այլ եւ Նախորդքն նորա Յոհաննէս եւ Գրիգոր այսպէս անուանէին զինքեանս: Թղ. Կամեն. դիւան.:„ Ծ. Թ.

եանցի Տէր Յակոբին. Ջուղայեցի Մահտեսի Մարգարին եւ Մահտեսի Գրիգորին. Թուին Հայոց ՊՃԽԴ[27]„: Այս արձանագրութիւնը կը գտնուի վիմի մը վրայ, որ եկեղեցւոյ նորոգութեան ժամանակ պատէն վար առնուած է* եւ եկեղեցւոյն մէջ կը պահուի[28]:

Եթէ հայ թուականն քրիստոնէականին հետ համեմատենք, կը տեսնենք որ ասոնք լիուլի կը միաբանին իրարու. վասն զի՝ ինչպէս յայտնի է, Հայք Մովսէս Բ. Եղիվարդեցի կաթողիկոսի ժամանակ՝ յամին 551 ի Դուին[29] գումարեալ ժողովէն կը սկսին իրենց թուականն, այն է՝ 11 Յուլ. 552. ուրեմն 844ին վրայ յաւելունք 551, եւ կ'ունենանք Եաշի հայ եկեղեցւոյն հիմնարկութեան տարին՝ 1395:

Թէ արդեամբք 1395ին շինուած է այս եկեղեցին՝ կը հաստատուի անտարակուսելի եղանակաւ նաեւ 800ին (1351) ի Կաֆա գրուած Աւետարանի մը մէջ՝ 900ին (1451) գրուած յիշատակարանէ մը, ուր յայտնապէս կ'ըսուի որ նոյն Աւետարանն Եաշի Ս. Աստուածածնի եկեղեցւոյն նուիրուած է[30]:

---

* Արձանագրութեանս հայերէն բնագիրն մեզի շնորհեց Պր. Սողոմոն Դրանիխոլեանց: Այս բնագրին մէջ կայ նաեւ հետեւեալ յաւելուածն. “Եւ այժմ վերանորոգեցաւ ի ձեռն բարեպաշտօն իշխանաց եւ համայն ժողովրդոց աշխատանօք եւ ծախիւքն: Ի թուականին Փրկչին 1803ին:„ Այս վէմս թէեւ եկեղեցւոյ նորոգութեան ժամանակ վար առնուած էր, ինչպէս կը յիշէ հեղինակն, սակայն այժմ վերստին նոյն տեղն հաստատուած է: Ծ. Թ.

Ուրեմն Պոլթուշանի եւ Եաշի հայ եկեղեցեաց հնութիւնն եւ Սուչաւայի Հայոց աւանդութիւնն կը ցուցընեն, որ Հայք, կարելի է անհատօրէն, շատ կանուխ ժամանակաւ Մոլտաւիա գաղթած են, ուր հետզհետէ երկրին բոլոր առուտուրն, եւ նոյն իսկ դրացի երկիրներու եւ Արեւելից առուտուրն իրենց ձեռքն անցուցին։

Սակայն այնպէս կ՚երեւայ՝ որ Մոլտաւիոյ Ստեփան Ե Փոքր (1517—1527) իշխանին 7034 (1526) Սեպտ. 20ին տուած ռոմաներէն վաւերագիրն Հայոց այնչափ կանուխ ժամանակաւ գաղթած ըլլալուն հակառակ ելլէ, վասն զի նոյն վաւերագրոյն մէջ կը կարդանք. “Հայք իմ պետութեանս նախահաւէն՝ Աղեքսանդր Բարի Վոյվոտէն (1402—1433) ընդունուեցան, երբ անոնք տաճկէն անգամ մեր մոլտաւական երկիրները գաղթեցին Հունգարիայէն եւ ուրիշ երկիրներէն իրենց հարց հաւատքին համար հալածուելով[31]։„

Այս յիշատակութիւնն չի կրնար ուղիղ ըլլալ, վասն զի պատմութեան ուրիշ ամէն աղբիւրներն կը հաստատեն, թէ այն ժամանակ գաղթող Հայերն իրենց թագաւորութեան անկմանէն ետեւ եւ Հայաստան տիրող կրօնական խռովութեանց պատճառաւ “ուղղակի„ անկէ եկան, եւ ոչ թէ հունգարական երկիրներէ Մոլտաւիա անցան[32]։ Վերոյիշեալ վաւերագրոյն վերջին խօսքն՝ թէ “երբ անոնք (Հայք) տաճկէն անգամ մեր մոլտաւական երկիրները գաղթեցին ...„ կրնայ միայն այնպէս մեկնուիլ, որ այնու կը յի-

շատակուի “առաջին մեծ գաղթականութիւնն„. վասն զի իրօք ալ Հայք 1418ին մեծ բազմութեամբ, այն է 3000 ընտանիք, Մոլտաւիա գաղթած են[33]. ապա թէ ոչ՝ չի կրնար մեկնուիլ՝ թէ ո՞վ շինած է 1350ին Պոթուշանի եւ 1395ին Եաշի հին հայ եկեղեցիները։

Հայոց կանուխ ժամանակաւ ի Մոլտաւիա՝ թէեւ նուազագոյն թուով գաղթած ըլլալուն կը վկայէ նաեւ այն պարագայն, որ, ինչպէս յիշեցի, Պետրոս Մուշադ մոլտաւիացի իշխանն՝ Մոլտաւիոյ վաճառական Հայերն, թերեւս անոր համար որ սակաւաթիւ ըլլալով առանձին եպիսկոպոս մ'ունենալ կարելի չէր, արդէն 1384ին ի հոգեւորս Լեմպէրկի արեւելեան հայ եպիսկոպոսին իրաւաբանութեան ենթարկեց։

Այս ամէն ըսուածներէն կրնայ ստուգութեամբ հետեւցուիլ, որ Մոլտաւիոյ եւ այսօրուան Պուքովինայի Հայերն նոյն երկիրներու ամենահին բնակիչներէն են։

Յամին 1418 Աղեքսանդր Բարի մոլտաւիացի իշխանն ի Մոլտաւիա գաղթող 3000 հայ ընտանիքներն յաջորդ եօթը մոլտաւական քաղաքներն բնակեցուց[34]. Սուչավա, Չէթաթէա ալպա, ուր արդէն 1421ին Կիլպէրդ տէ Լանուա զիրենք գտաւ, Կալաց, Վասլույ, Պոթուշան, Տորոհոի եւ Հոթին[35]։

Այս 3000 հայ ընտանեաց իրենց հայրենիքը թողլով Մոլտաւիա գաղթելուն պատճառն՝ իրենց երկրին մէջ այն ժամանակները տիրող կրօնական խռովութիւնն է։ Հռոմայ քահանա-

յապետք արդէն շատ կանուխ ժամանակներէ
վեր կը ջանային զՀայս լատին եկեղեցւոյ դար-
ձընել, եւ այն՝ ձեռնտուութեամբ Հայ Թագաւ-
որաց, որոնց օգնութիւն կը խոստանային ընդդէմ
թշնամեաց, եւ պարգեւ ու թագաւորական զար-
դեր կը յղէին. այսպէս՝ Իննովկենտիոս Գ Քա-
հանայապետն 1189ին Հայոց Լեւոն Բ Թագաւ-
որին թագաւորական զարդեր եւ թագ յղեց,
յորդորելով զինքն թղթով մը՝ որ Առաքելական
Աթոռոյ հաւատարիմ մնայ միշտ։

Նոյնպէս ջանացին Հռոմայ Քահանայապետք
Հայ կաթողիկոսներու թագ եւ պարգեւներ ղըր-
կելով՝ զՀայս ի միութիւն ընդ Հռոմայ շահե-
լու[36]։

Հռոմայ Քահանայապետաց միութեան այս
ջանքերն եւ երկրին նշանաւոր խնդիրներուն եւ
նոյն իսկ յաջորդութեան կռիւներուն մէջ խառ-
նուիլն, որոնց մէջ սովորաբար հզօրագոյնին կող-
մը կը բռնէին, եւ ի փոխարէն լատին եկեղեցւոյ
հետ միութիւն կը պահանջէին, մեծ եւ երկրին
համար վնասակար խռովութիւններ, արիւնային
պատերազմեր եւ մինչեւ արքայասպանութիւն
յառաջ բերին, եւ վերջապէս առաջնորդեցին
փոքր-Հայկական կամ Կիլիկեան թագաւորու-
թեան կործանման յամին 1378[37]։ Եգիպտացի
Մամլուքներն այս պետութեան ինքնօրինութեան
վերջ տուին, այնպէս որ վերջին Հայ թագաւորն
Լեւոն Զ Լուսինեան ընտանիքէն, Գաղղիա փա-
խաւ իւր թշնամեաց դէմ ի զուր օգնութիւն
խնդրելու, ուր եւ 1393 Նոյ. 19ին մեռաւ ի

Փարիզ[38], եւ Սէն Տընիի թագաւորական դամբանարանին մէջ թաղուեցաւ[39]։

Միութեան այսպիսի փորձ մը փորձեց նաեւ Յովհաննէս ԻԲ Քահանայապետն, եւ Հայոց Կոստանդին Բ կաթողիկոսն եւ Աւշին թագաւորն ի միութիւն յորդորեց։ 1316ին յԱտանա գումարեալ ազգային ժողովոյն մէջ երկուքն ալ միութեան կողմն անցան[40]։ Երկրին մեծամեծներն թէեւ թագաւորին եւ կաթողիկոսին կողմն եղան, սակայն ժողովուրդն միութեան դէմ կեցաւ։ Ասոր ապացոյց էր Դոմինիկեան Հարց ապարդիւն ջանքերն, ի մասնաւորի Յովհաննու Գառնեցւոյ եւ Բարթողիմեայ Պոլոնիացւոյ, որոնք՝ բաց ի Կիլիկիոյ քանի մը գիւղերէն, համակրող չգտան[41]։

Նաեւ Նախիջեւան[42] քաղաքին մէջ Դոմինիկեան Հարք հաստատուած էին, եւ իրենց առաջնորդը "Արքեպիսկոպոս միացեալ Հայոց" տիտղոսն ունէր[43]։

Միութեան այս փորձերն ազգին մէջ այնպիսի հակառակութիւն յարուցին[44], որ Ատանայի ժողովքէն ետեւ՝ կրօնաւոր թագաւորն Հեթում Բ[45], Լեւոն Դ[46], եւ Կոստանդին Գ[47], որ վերջին Հայ թագաւորներէն մին է, սպանուեցան. իսկ Կի թագաւորն սաստիկ հալածուեցաւ։ Դէպքեր՝ որոնց հիմն այն էր, որ այս թագաւորք Հայ եկեղեցւոյն մէջ լատին ծէսեր մուծանել փորձեցին։

Անգութ հալածանքն, որ այս վարմանց կ՚ընկերանար, լատին ծէսերու բռնութեամբ վաւերացումը եւ Մամլուք տէրերու ժողովրդեան

վրայ ըրած ճնշումն անտանելի ըլլին հազարաւոր Հայ ընտանեաց այլ եւս Հայրենիք մնալն, եւ ասոնք ստիպեցան պանդխտութեան գաւազանը ձեռք առնուլ. Հայրենի երդին ընդ միշտ կռնակ դարձընել, եւ ուրիշ խաղաղագոյն երկիրներ փնտռել, ուր կարենան ազատութեամբ իրենց Հայրենաւանդ սկզբանց համեմատ զԱստուած պաշտել:

Հայք երբ Մոլտաւիա եկան, լաւ ընդունելութիւն գտան: Այն ժամանակի իշխանն Աղեքսանդր Բարի՝ իրենց եօթը քաղաք ցուցուց ի բնակութիւն, եւ նաեւ շատ արտօնութիւններ շնորհեց իրենց, ի մէջ այլոց նաեւ՝ — այն ժամանակի գաղթականական քաղաքականութեան համեմատ, — իրենց գաղթականութեան սեպհական վարչութիւն տուաւ, այն է՝ Հայ Scholtuzներ (Schultheise[48]), ինչպէս Թրանսիլվանիոյ Սամոշույվարի (Կեռլա = Հայաքաղաք) Հայերն ցայսօր ունին[49], ուր եւ երկրատնտեսութիւնն, արջառաբուծութիւնն եւ ամէն առուտուրն բոլորովին իրենց ձեռքն առած են[50]: Սակայն Հայք ինչպէս նաեւ Հրեայք, հին Մոլտաւեան իրաւանց համեմատ, իրաւունք չունէին մսավաճառանոց, պանդոկ եւ հացագործարան ունենալ, եւ ոչ ալ կալուած, ինչպէս՝ արտ, ջաղացք, մեղուանոց եւ տուն շինելու երկիրներ եւ այլն[51], այլ զասոնք անդրէնածիններէն կըրնային միայն վարձել:

Սակայն կրօնական իրաց մէջ ապահովութիւն ունէին կատարեալ ազատութեան[52], եւ

Ռոմանիացիք՝ ի բնէ հանդուրժողք, այս մասին ոչ Հայերը[53] եւ ոչ Մոլտաւիա բնակող ուրիշ ազգերը կը նեղէին, ինչպէս յայտնի է Գէորգ ֆոն Ռայխէրստորֆի գրութիւններէն, որ Ֆերտինանտ Թագաւորին դեսպանն էր Մոլտաւիոյ Ռարէշ իշխանին (1527—1538, եւ 1541—1546) քով։ Վասն զի կը գրէ անիկայ. "Մոլտաւիոյ մէջ Մոլտաւիոյ իշխանին իբրեւ հպատակ կ'ապրին ի միասին այլեւայլ ցեղով եւ կրօնիւ ազգեր, ինչպէս՝ Ռութէն, Լեհ, Սերպիացի, Հայ, Պուլկար եւ Թաթար, կան նաեւ շատ Սաքսոնիացիներ ի Թրանսիլվանիոյ. ասոնք ընե-տարբեր սովորութիւններ եւ վարդապետութիւններ ունին, սակայն իրարու հետ չեն կռուիր[54]։"

Նոյն կերպով կը ստորագրէ իշխան Դեմետրիոս Քանդեմիր Ռոմանացւոց հանդուրժողութիւնն առ Հայս ի կրօնականս, վասն զի կ'ըսէ. "Հայոց եկեղեցիքն որթոդոքս եկեղեցիներէն ոչ փոքր եւ ոչ նուազագոյն զարդարեալ են, եւ ազատութիւն ունին իրենց կրօնին մէջ[55]։"

Մոլտաւիոյ, ինչպէս նաեւ Պուքովինայի Հայերն ժամանակաւ այնպէս հարստացան, որ Սուչաւացի Հայ մը Կամարսան անուամբ եւ իւր ամուսինն Սդանա՝ Սուչավայի Պուրկկասսէ փողոցի վրայ ունեցած տներնին մեռնելու ատեն Մոլտովիցա վանքին նուիրեցին։ Այս նուէրն հաստատեց Պետրոս Ահարոն Գ Մոլտաւիոյ իշխանն յամին 1448[56], իւր երկրորդ իշխանութեան ժամանակ (1448—1449), զոր եւ կրկնեց յետոյ յամին 1451 Ցնր. 10 Պոկտան Բ իշխանն

(1449—1451)[57], որ մեծ ու փոքր տուրքերն շնորհեց, եւ նոյն տունն պահպանութեան տուրքէն, իշխանական ջաղացքի ծառայութենէն, եւ ամէն իշխանական տուրքերէ եւ ծառայութիւններէ եւ աշխարհական իրաւաբանութենէ ազատ կացոյց[58], զոր նաեւ Պոկտանի որդին՝ Ստեփան Մեծ իշխանն (1457—1504) հաստատեց 1457ին Օգոստ. 12ին[59]։

Նոյնպէս Յովհաննէս անուն Հայն Սուչավայի մէջ տուն մը ժառանգութիւն թողուց նոյն Մոլտովլիցա վանքին, որ եւ Պետրոս Ահարոն իշխանէն հաստատուեցաւ յամին 1454 Հոկտ. 6, որ է ըսել՝ իւր երրորդ անգամ իշխելուն ժամանակ (1451—1455)[60], եւ հարկէ ազատ կացոյց զայն[61]։

Հայք կրնային նաեւ կալուածներ պարգեւել վանքերու. այսպէս Յովհաննէս Արմէնսին Հայը՝ Եաշի Ջինուդի մէջ Օսդաբգանա գիւղին կէսն ժառանգութիւն թողուց Մոլտովլիցա վանքին, զոր Ստեփան Մեծ իշխանն յամին 1483, Յնր. 8ին հաստատեց[62]։

Նոյն Ստեփան Մեծին ժամանակներն կը յիշուի Սուչավացի հարուստ Հայ մը Վարդիկ անուամբ, որ մեռնելու ժամանակ իւր որդւոցը ժառանգութիւն թողուց տներ եւ հայրենական կալուած մը[63]։

Յամին 1475 դարձեալ հազարաւոր Հայեր եկան Մոլտաւիա, Տաւրիդ Թերակղզիէն (Խրիմ), երբ Տաճիկք եւ Թաթարք զԿաֆա առին։ Հայք լաւ ընդունելութիւն գտան եւ Ստե-

միան Մեծ իշխանն իրենց բնակութեան տեղ ցուցուց Սուչաւա, Եաշ, Ռոման, Ֆոքշան եւ Պոթուշան քաղաքները[64]:

Բայց երբ յամին 1497 Լեհաց Ալբերտ թագաւորն Մոլտաւիոյ մայրաքաղաքին՝ Սուչավայի վրայ քալեց, եւ զայն երկու ամիս ի զուր պաշարեց[65], բազմաթիւ Սուչաւացի Հայեր, որոնք այնտեղ 700 տանց մէջ կը բնակէին, պատերազմի եւ պաշարման վտանգներէն փախչելով՝ գաղթեցին Հունգարիա, Թրանսիլվանիա եւ Կալիցիա[66]:

Յամին 1512[67], Պոկտան Գ. Շիլ իշխանին ժամանակ (1494—1517) հարուստ Հայ մը Տրական Տանովաք*[68] անուամբ, — որուն համար կ'աւանդուի թէ եզնավաճառ էր եւ անգամ մը ուխտած էր՝ որ եթէ առուտուրն շահաւոր ըլլայ եկեղեցի մը շինէ, — Սուչավայի մէջ սեպհական կալուածին վրայ իւր ծախիւքն Հայոց վանք մը կառոյց, զոր Ս. Կոյս Մարեմայ նուիրեց եւ զայն Հաճկատար[69] անուանեց, ինչպէս եկեղեցւոյ դրան մարդակին վրայ արձանագրուած է: Այժմ Հաճկատարը վանք չէ, այլ ուխտատեղի մը, ուր շատ կը յաճախուի, եւ ուր հայաբնակ ամէն երկիրներէն Հայք գունդագունդ կը դիմեն. ասիկայ Սուչավայի հարաւային կողմն 1/4 մղոն հեռու է, եւ պաշտօնական անունն է

* Այսպէս ի բնագրին: Պէտք է ըլլալ Տօնաւագ: Ասոր համար կ'ըսուի թէ նաեւ ի Հունգարիա եկեղեցի շինել տուած է: Ծ. Թ.

„Mitoc". *Հայք մաղձայուզէ մ՚ազատելնուն համար՝ 1848էն ի վեր ուխտ դրած ըլլալով՝ տարին երկու անգամ այնտեղ ուխտի կ՚երթան թափորաբար, այսինքն Օգոստ. 15/27ին (Շաբաթ) եւ Դեկտ. 28ին, այն է՝ Ս. Յակոբայ տօնին: Այս եկեղեցւոյ մէջ ի պարտուց տարին երեք անգամ պատարագ կը մատուցուի, այն է՝ Վերափոխման, Վարդավառին եւ Յովակիմայ եւ Աննայի տօներուն:*

*Եկեղեցւոյս մէջ խորանին վրայ կայ Ս. Աստուածածնի մեծ պատկեր մը, — ինչպէս առ հասարակ Հայոց ամէն եկեղեցեաց մէջ այսպիսի պատկեր մը կ՚ըլլայ, — որուն բուժիչ զօրութիւն մը կը տրուի. եւ այս պատճառաւ պատկերին վրայ կախուած է բազմութիւն մը ոսկեղէն եւ արծաթեղէն աչք, ականջ, ականջ, ոտք, ձեռք եւ այլն, զորոնք Ս. Աստուածածնի նուիրած են հիւանդք: Եկեղեցւոյ մէջտեղն արեւելեան ամէն եկեղեցեաց սովորական փայտեայ բեմն կը բարձրանայ, որուն վրայ կայ Բարթողիմէոս եւ Յակոբ սուրբ Առաքելոց պատկերներն՝ սլաւական արձանագրութեամբ. խորանին վերի կողմն պատկերներու որմոյն վրայ կան չորս Աւետարանիչք, իսկ խորանին դռնակներուն վրայ Ս. Ստեփանոս Նախավկային եւ Ս. Լաւրենտիոս Սարկաւագին պատկերներն, ամէնն ալ առ հասարակ ռոմանական արձանագրութեամբ:*

*Եկեղեցւոյ դրան առջեւ՝ գաւթին մէջ կայ Գրիգոր հայ եպիսկոպոսին շիրիմը: Այս տեղ*

կեցող մի միակ զանգակն[70], որ Ս. Սիմէոն եկեղեցւոյն գերեզմանատան մէջ գերեզման մը փորելու ժամանակ գտնուեցաւ, աւանդութեան համեմատ՝ ԺԳ. դարուն Հայաստանէն հոս բերուած է։ Այս զանգակին արձանագրութիւնն է. "Յիշատակ է Ղեւորացի Առաքելի ի վանաց սրբոյն Տաթեւու, Թ. Հ. ՈՂԳ. (1244) գրեցաւ յաւուր հինգշաբաթի։„*

Եկեղեցւոյ դրան արձանագրութեան եւ տեղաբնակ Հայոց աւանդութեան համեմատ՝ Ջիրոդէ Հանգօ (Խաչիկ Հանգոյեան) անուն հայն 1521ին[71], Ստեփանիցա (Ստեփան Ե) Մանկան ժամանակ (1517—1527) Սուչավայի մէջտեղն գտնուող Ս. Խաչ եկեղեցին շինած է, ուր յառաջագոյն փայտակերտ հայ եկեղեցի մը կար, եւ ինքն ալ նոյն եկեղեցւոյն մէջ թաղուած պիտի ըլլայ։ Նոյն շինողին շիրիմն այժմ չի տեսնուիր եկեղեցւոյն մէջ, վասն զի եկեղեցւոյն յատակը բոլորովին տախտակամած է այժմ։

Եկեղեցւոյ գաւթին մէջ կան քանի մը գերեզմաններ, հետեւեալ արձանագրութեամբք.

1. Սարկաւագ Ասվատուրին Ռէրդիկա իլ Գիա (?) հանգեաւ Թ. Հ. ՋՂԷ (= 1528)

2. Գրիգորի երիցու, հանգեաւ Թ. Հ. ՌԻՁ (= 1577)

---

* Այս եւ յաջորդ տապանաքարերու արձանագրութիւններն ստիպուած ենք թարգմանել գերմաներէնէ. վասն զի թէեւ դիմեցինք Սուչավա ուր հարկն էր, սակայն պատասխան չընդունեցանք։ Ծ. Թ.

3. Մատթէոս մաքսաւոր, հանգեաւ Թ. Հ. ՌԿԱ (= 1612)*։

4. Գրիգորի Նիկողայ Պարոն Քաբրի, 1731։

Հոս յիշուելու արժանի է՝ որ Վոլչինսքիի պարտիզին մէջ, Թգրկն.-կայսրկն. Թղթատարութեան այժմու շէնքին քով՝ կար Հայոց Հին եկեղեցի մը Ս. Երրորդութիւն անուամբ, որ անցեալ դարու վերջերը բոլորովին կործանեցաւ։

Տեղական աւանդութիւնն այս եկեղեցւոյ մասին կ'աւանդէ՝ որ այս պարտիզին եւ աւերակին տէրն՝ Տիկին Քաբրի երբ իւր տղուն հետ պարտէզը կը պտըտէր, եկեղեցին կործանեցաւ, ինք եւ տղան փլատակաց տակ մնացին, ինք մեռաւ իսկ տղան ազատեցաւ ողջ առողջ։ Այս աւերակին քարերէն շինուեցան ժողովրդապետական եկեղեցւոյն կից մատուռն եւ ասոր խորանը։

---

* Անշուշտ այս տապանաքարն նոյն է Ս. Խաչ եկեղեցւոյն արեւմտեան դրան քով՝ եկեղեցիէն դուրս կեցող երկաթագիր տապանաքարին հետ, որոյ արձանագրութիւնն է՝

"Տապանս այս Մարտիրոսին
Մեծ տամղաճի Երիմիեն
Աստ եղեալ մարմին սորին
Ի ծերութեան ժամանակին
Առ աստուած փոխէ զոգին
Թվին ՌԿԱ, մախսի ԻԲին։„ (= 1612)

Նոյն եկեղեցւոյ մէջ կան երկու հնագոյն տապանաքարք։ Առաջնոյն արձանագրութիւնն է՝ "Սայ է տապան Էսաի իրիցու, թվին ՋԽԶ.„ (1497)։ Իսկ երկրորդինն՝ "Սայ է տապանն Էտիլ Պէյին, որ է որդի Սողոմոնին հանգեաւ Թվին հազար ԻԸ ապր. ամսոյ ԺԴ.ին„ = (1579)։

Ծ. Թ.

Նոյն տեղական աւանդութիւնը կը սորվեցընէ մեզի, որ ուրիշ պարսպապատ Հայ եկեղեցի մ'ալ կար այժմու ժողովրդապետական եկեղեցիէն ոչինչ հեռի, ուր այժմ քաղաքային մսավաճառանոցք կան։ Այս աւանդութիւնն ստուգեցաւ՝ երբ քանի մը տարի յառաջ նոյն մսավաճառի շուկային հիմը կը դնուէր, գըտնուեցան եկեղեցւոյ մը հիմունքն եւ հայերէն տապանաքարեր։

Սակայն Մոլտաւիոյ Հայերն ունեցան նաեւ իրենց տառապանքները, ոչ թէ Ռոմանացի ժողովրդենէ, այլ ասոնց քանի մ'իշխաններէն։ Այսպէս Սդեֆանիցա (Ստեփան Ե) փոքր կամ Անագորոյն իշխանն՝ երբ 1526ին Վալաքիայէն ետ կը դառնար աւարաւ, Վասլուի Հայոց մեծ հասարակութիւնը հալածեց եւ իրենց եկեղեցին կործանեց[72]։ Անշուշտ աւ այս գրգռեց զինք Վասլուի քաղաքացւոց երեսփոխաններու տըրտունջն, որոնք արդէն վերոյիշեալ արշաւանաց սկիզբն՝ մատուցած էին իշխանին իրենց տըրտունջն Վասլուի Հայոց առեւտրական ճնշումներուն դէմ[73]։ Այս անագորոյն իշխանին պատուհասն արդէն 1527 Յնր. 12ին ի Հօթին վրայ հասաւ, ուր ամուսինն զինք թունաւորեց թշնամի Լեհաց խորհրդովն, որոնք իրմէ կը վախնային[74]։

Այլ մեծագոյն եւս էր՝ Ռոմանացւոց պատմութեան մէջ իբրեւ մեծ բռնաւոր[75] ճանչցուած Ստեփան Ռարէշ Է (1551—1552) իշխանին Մոլտաւիոյ Հայոց հասուցած նեղութիւնքն։ Յա-

մին 1551 բովանդակ երկրին մէջ ծանուց, որ իւր բոլոր հպատակներին որթոդոքս հաւատքն ընդունին, եւ ով որ ուրիշ հաւատք ունէր, իբրեւ հերետիկոս կը հալածուէր[76]: Նաեւ Հայք, որ այն ժամանակ հերետիկոս համարուեցան, ուզեց նոյն իշխանն ամենայն հնարիւք որթոդոքս դարձընել. եւ երբ Հայք ընդդիմացան, հրաման տուաւ Վերափոխման տօնին[77] Սուչավայի, Պոթուշանի, Ռոմանի, Հուշի եւ այլն Հայոց եկեղեցիները կողոպտել, աւերել եւ փակել, սուրբ անօթներն ու սպասները յափշտակել, եկեղեցական մատեանքն այրել, եւ Սուչավա նստող հայ եպիսկոպոսն ու քահանաները բռնել*[78]: Դարձընելու այս փորձերու պատճառն էր այն յեղափոխական ժամանակին հոգին[79], կամ թերեւս ճշդագոյնս՝ Ստեփան իշխանին անագորոյն բնութիւնն կամ հարուստ Հայերու դրամը կորզելու դիտաւորութիւնն: Բայց այս երկայն չտեւեց, վասն զի Պօյարներու ապստամբութիւնն թէ այս հալածման եւ թէ իշխանին կենացը վերջ տուաւ, երբ իշխանն 1552ին բանակին մէջ իւր տղոց հետ դաւաճանութեամբ սպանուեցաւ[80]:

Բայց այս իշխանին վրայ նաեւ հանդուրժողութեան քանի մը հետքեր տեսնուեցան. վասն զի կը գտնենք որ իւր իշխանութեան ժամանակ (1551) Ակոբշին[81] (Յակոբ) Վարդան

---

* Մինաս Թոխաթեցւոյ գրածն այս անցքերու մասին տես Հանդէս Ամսօրեայ, 1888, էջ 37, 62:
Ծ. Թ.

անուամբ ազնուական եւ հարուստ Հայ մը, որուն ընտանիքն յետոյ Լեմպէրկ գաղթեց ուր եւ իւր սերունդը կայ ցայսօր, Սուչաւայի արեւմտեան կողմը՝ շինեց[82] Ս. Աւքսէնտ հայկական եկեղեցին, որ այժմ Zamka կը կոչուի[83], ուր եւ յետոյ թաղուեցաւ*[84]։

Այս եկեղեցւոյ մէջ տարին երկու անգամ պատարագ կը մատուցուի ի պարտուց, այն է Ս. Գէորգայ տօնին եւ ամառն՝ Ս. Աւքսէնտին։

Այս եկեղեցին մինչեւ ցայսօր բարձրաբերձ, ստուար եւ թնդանօթ արձակելու ծակե-

---

* Ակոբշինի տապանաքարին արձանագրութիւնն այլեւայլ ձեւով կ՚աւանդուի այլեւայլ հեղինակներէ: Պարոնչ (Żywoty, էջ 5,) եւ Բժշկեան, Ճնպրհրդութիւն. էջ 132 կը դնեն: "Աստ հանգչի Յակոբշայ շինող տաճարիս, Թ. 1551:„ Յօղուածոյս հեղինակն կը դնէ այլազգ, տ. վարն ծան. 84: Իսկ ի գրուածս Հ. Պօղոս Վ.ի Յովնանեան, որ 1829ին ի Սուչավա էր, կը գտնենք այսպէս.

"Այս է տապան Ակոբշին
Որ է որդի Ամիրային
Սա է շինող սուրբ տաճարին.
Հանգեաւ Հայոց Ռ թուին
ԿԱ էր աւելին, Օգոստոսի ԺԵ„

Ուստի 1612ին վախճանած է Ակոբշայ: Այս արձանագրութիւնն ըստ գծագրութեան նոյն վարդապետին՝ տապանաքարին բոլորտիքը քանդակուած է: Այս գրուածոց մէջ կան նաեւ հետեւեալ արձանագրութիւնք. "Սա է տապան հանգստեան Սարգիսին, որ է որդի Շահրիմին: Հանգեաւ սայ թվ. ՌԺին (= 1561), Մայիսի գ. օրն գ. շաբթի: Ով Աղամայ որդիք թափեցէք զգինին ի ձեզմէ. զմարմինդ կու պարարես զհոգոյդ բաժին պատրաստի:„ Դարձեալ՝ "Սա է տապան... (աճբաճթեռաշի) դի Տէր Խաչատուրին: Հանգեաւ Թ. ՌՀԴ = (1625) Յունիսի ԺԵ:„ Ժ. Թ.

րով որմ մը կը շրջապատէ, եւ այս պատճառաւ հին ատեններ իբրեւ բերդ կը նկատուէր[85]:

Եկեղեցւոյն դէպ ի Աքէյա գիւղն դարձած կողմը՝ եկեղեցւոյ ձեւով երկայն աշտարակով մ'ամրացեալ է: Այս աշտարակին տակն կոփածոյ մեծամեծ քարամբք շինուած է կամարաձեւ դուռն, որուն երկու կողմն կամարաձեւ բնակելի խցիկներ կան, իսկ (առաջին) դստիկոնին վրայ կայ փոքրիկ եկեղեցի մը, որուն խորանակամարին վրայ մինչեւ ցայսօր Ս. Աստուածածնի պատկեր մը յայտնի կ'երեւայ. կայ նաեւ բնակեալ երկու խցիկ, ուր հրացան եւ թնդանօթ արձակելու եւ դիտելու որմածակեր կան:

Դստիկոնին մէջ, ինչպէս գաւթին կողմը պատերուն վրայ յեցած քարեղէն նեցուկներէն կ'երեւայ, այս շէնքին ներքին երեք կողմերն անցք մը կար, ուր կարելի էր մտնել նոյն տեղն եղող խցիկներէն՝ անցնելով փոքրիկ տնակի մը եւ դրան մը մէջէն, որ այսօր պատով հիւսուած է:

Դէպ ի Սուչավա նայող կողմը շրջապատող որմոյն վրայ մեծագոյն աշտարակ մը կայ, (որ հիմայ զանգակատուն է,) որուն տակն է դուռ մը՝ այժմ պատով հիւսուած, քաղաքին կողմանէ եկողներուն համար: Այս կամարաձեւ դրան վերին ծաղկանկար քանդակեալ քարին միջավայրին կայ թուական մ'արձանագրեալ, որ կարմրագոյն թուերով "1606" հիմնադրութեան տարին կը ծանուցանէ: Դրան կամարին վրայ կայ տեսակ մը մատուռ կամ խորան, ուր կը մտցուի աշտարակին քովն շինուած խղխըն-

ջանձեւ սանդղով մը՝ քարեղէն նեցուկներու վրայ հաստատուած անցքէ մը (որ հիմայ միայն երեք կտոր մայր փայտէ կազմուած է։) Այս մատրան վրայ կայ դիտանոց մը, որ ամենագեղեցիկ տեսք ունի քաղաքին վրայ, եւ շատ աւելի հեռու՝ արեւելք եւ արեւմուտք։ Այս դիտանոցէն կը մտցուի աշտարակին շինութեան ժամանակ վախճանի մը համար պատին մէջ շիշինուած խորունկ եւ անդուռն այր մը։ Մատրան դրան քով կան գրեթէ երկու մեդր հեռու. ուրիշ երկու քարեղէն դռնամարդակներ, որոնք՝ ուրիշ դուռ մ'ալ շինելու սահմանեալ էին անշուշտ. այս դռնամարդակներու վարի ծայրն ծաղկենկար քանդակեալ են՝ նման դրան կամարին կուփածոյ քարին։ Այս երկու դռնամարդակներու անջրպետն ամուր պատով փակուած է, եւ ամբողջն այնպէս ծեփուած, որ մարդ հազիւ կը նշմարէ պատի վրայի այս դռնամարդակները։ Այս որմով փակեալ դրան ինչ բանի ծառայելն անմեկնելի է, վասն զի այս փակ դուռն մատուռը չի տանիր. մատրան մէջ նոյն տեղն դրան հետք մը չկայ։ Կարելի է որ այն դրան ետեւն, որ աշտարակին եկեղեցւոյ կողման անկեան վրայ կ'երեւայ, գաղտնի սենեակ մ'ըլլայ, ուր թանկագին իրեր պահուած ըլլան, եւ այս սենեկի դուռն ամուր պատով փակած ըլլան, չնշմարուելու չափ ծեփուած, եւ նաեւ այս դրան առջեւ գտնուող անցքը բարձող քարեղէն նեցուկներն կտրած ըլլան այն սենեկին գոյութեան ամէն հետքը ջնջելու համար։

Վերջապէս եկեղեցւոյ ընդարձակ գաւթին մէջն է մեծ ու գեղեցիկ եկեղեցին Ս. Աւքսէնտ, եւ ասոր աւագ դռնէն ոչինչ հեռու՝ 10 քլաֆդէր խորունկ հին աղբիւր մը, որմէ Սուչավայի եւ շրջակայից ամենացուրտ ջուրը կը բղխէ։

Ամբողջն շրջապատող որմոյն ներքին կողմն մինչեւ ցայսօր կ'երեւան ամրական զինուորաց բնակութեանց մնացորդներն[86]։

Պէտք է նաեւ յիշատակել՝ որ շէնքին արեւմտեան պատը կը զարդարէ քարեղէն ոլորաձեւ կարմրագոյն պսակ մը։

Այս եկեղեցեաց շինութեան հեղինակին եւ ժամանակին վրայ Հայոց եւ Ռոմանացւոց քով անմիաբան աւանդութիւններ կան, զոր հոս համառօտիւ յառաջ կը բերենք, թէեւ պատմական արժէք չունենան։

Հայ աւանդութիւնն Ս. Աւքսէնտի եկեղեցւոյն հիմնադիրը չի ճանչնար զԱկոբշին, այլ կ'աւանդէ թէ երեք եղբարք՝ Յակոբ, Աւքսէնտ եւ Գրիգոր 1606ին այս տեղը գնեցին, եւ Յակոբ շինեց Սքէյա նայող կողման Ս. Յակոբայ նուիրեալ տնական մատուռն, Աւքսէնտ՝ գաւթին մէջի Ս. Աւքսէնտի մեծ եկեղեցին, եւ Գրիգոր՝ դէպ ի քաղաք հայող Ս. Գրիգոր Լուսաւորչի, Հայոց առաքելոյն, աշտարակի մատուռն[87]։

Տեղական Ռոմանացւոց աւանդութիւնն բոլորովին հակառակ է Հայոց աւանդութեան։ Ռոմանացիք կ'աւանդեն թէ Ս. Յակոբայ եկեղեցին յառաջագոյն ռոմանական-որթոդոքս եկեղեցի էր ննջման Ս. Կուսի, Ս. Աւքսէնտի եկե-

ղեցին՝ հին Աւագ-ուրբաթ եկեղեցի էր, իսկ Ս. Գրիգորի աշտարակամատուռն մեծ աշտարակն էր ամրոցին։ Ի հաստատութիւն յառաջ կը բերեն որմերու վրայ որթոդոքսական ըմբռնմամբ նկարուած հին նկարներն ու սրբոց պատկերները, որ տակաւին կ՚երեւան, եւ Ստեփան Մեծին ժամանակի սովորական որմազարդերն, ինչպէս՝ վարդ, ծաղիկ, նկարեալ եւ արծնեալ աղիւս, քարեղէն ոլորեալ պսակներ, որպիսիք ցայսօր ամէն նոյնպիսի շինուածոց վրայ կ՚երեւան։ Դարձեալ կ՚ըսուի՝ որ այս եկեղեցիք երբ փլչելու վրայ էին, Մոլտաւիոյ Թէոփիլոս մետրապոլտին ժամանակ[88] ուրիշ երկու եկեղեցեաց հետ հարուստ Հայու մը ծախուեցաւ 600 տուքադի։ Հայք այս եկեղեցին նորոգեցին, եւ իրենց աստուածային պաշտամանց յարմարցուցին[89]։

Սակայն Զամքայի Ս. Աւքսէնտ եկեղեցւոյն մէջ մինչեւ ցայսօր կեցող Ակոբշինի տապանաքարին արձանագրութիւնն երկու աւանդութիւնքն ալ անհիմն կը ցուցընէ։

Յամին 1569 Լուպլինի պետական համագումար ժողովն Լեհաստանի ամէն ոչ-կաթողիկեայ բնակիչներն արտաքսեց, որով Լեհաստանի արեւելեան Հայք մերժուեցան. ասոնք անկէ Մոլտաւիա գաղթեցին եւ Սուչավա եւ այլ քաղաքներ հաստատուեցան, ուր ամենուրեք լաւ ընդունելութիւն գտան[90]։

Պոկտան Դ Մոլտաւիոյ իշխանին ժամանակ, (1568—1572) որ էր որդի Աղեքսանդր Լաբուշնէանու Վոյվոտայի, Մոլտաւիոյ Հայոց վի-

ճակն վերստին վատթարեցաւ։ Պոկտան իշխանն Լեհաստանի ազնուական բազմաթիւ ընտանեաց հետ խնամեցած էր, Լեհերն իւր երկիրն բերած եւ նոյն իսկ պետական մեծամեծ պաշտօններ անոնց յանձնած։ Ընդոծին Պօյարներն սկսան զինք յանդիմանել, որ որթոդոքսութենէ ելել եւ լատին եկեղեցւոյ անցնիլ կ'ուզէ։ Պոկտան այս անհաճոյ յանդիմանութենէն ազատելու եւ որթոդոքս եկեղեցւոյ վրայ իւր ունեցած եռանդը ցուցընելու համար՝ սկսաւ յամին 1570[91] հալածել տեղաբնակ Հայերն, վասն զի ասոնք կ'ընդդիմանային զիրենք որթոդոքսութեան դարձընելու փորձերուն[92], եւ վերջապէս զասոնք երկրէն մերժեց[93]։

Թէեւ այսչափ հալածանք կրեցին Հայք, սակայն կ'երեւայ թէ — հաւանականաբար իրենց հարստութեամբը — շատ մեծ ազդեցութիւն ունէին երկրին մէջ. վասն զի նոյն Պոկտանին յաջորդեց Մոլտաւիոյ գահին վրայ Հայու մը հայ կնոջն՝[94] Սրբուհւոյն եւ Ստեփանիցա (Թոմշա 1563—1564) իշխանին ապօրինաւոր զաւակն Յովհաննէս Անգութն (1572—1574), որ իւր հայ ծագման պատճառաւ "Յովհաննէս Հայ„[95] կը կոչուի։

Յամին 1582, Եանգուլ (Յովհ. Բ) Սաքսոնիացի իշխանին ժամանակ, (1579—1582) որ Պետրոս Ռարէշ իշխանին եւ Վայս Եօրկին Թրասիլվանիացի-Սաքսոնիացի կնոջն ապօրինաւոր որդին էր, Մոլտաւիոյ արեւելեան հայ եպիսկոպոսն Յովհաննէս Յունանեան[96], որուն աթոռն

Սուչավա էր, Լեմպէրկ կոչուեցաւ, նոյն տեղւոյ արեւելեան Հայ եպիսկոպոսական աթոռը նըստելըւ, վասն զի Լեմպէրկի Թարսումաս (Պարսամ) Պոկտանովիչ աթոռէն հրաժարած էր[97]: Թարսումաս Պոկտանովիչ անոր համար աթոռէն հրաժարիլ ուզեց — կամ աւելի՝ Լեհացմէ առայն ստիպեցաւ, — վասն զի Լեհաց բաղձանաց համեմատ՝ հին արեւելեան հաւատքին յամառութեամբ յարեալ Լեհահայերն[98] կաթողիկէականութեան դարձընել թէեւ աշխատեցաւ, բայց իւր երեքամեայ եպիսկոպոսութեան ժամանակ (1579—1582)[99] չկրցաւ յաջողցընել[100]:

Աղմկալի ատեններն մեզ արդէն ծանօթ Տրական Տանովաքն Սուչավայէն Լեհաստան փախաւ, եւ այնուհետեւ Լեմպէրկ իւր բնակութիւնն հաստատեց, որով Մոլտաւիոյ իշխաններն անոր ի մասնաւորի Իցքանիի քով ունեցած ամէն կալուածներն, ուր այսօրս Ս. Աստուածածնի որթոդոքս եկեղեցին կայ, իբրեւ անտէր ստացուածք յարքունիս գրաւեցին: Սակայն Տրականի մահուանէն ետեւ՝ իւր որդին Պոկտան մէջտեղ ելաւ եւ Երեմիա Մովիլա իշխանին առջեւ դատ բացաւ եւ ետ պահանջեց իւր հայրենի ստացուածքն, որուն իբրեւ վկայ կոչեց ծերունի Ռոմանիացիներ եւ Հայեր, որով յիշեալ իշխանն յամին 1597 Յունր. 22ին տուած վաւերագրով հայրենի ստացուածքն անոր ետ տուաւ եւ նոյնն հաստատեց[101]:

Հայք արեւելքի վաճառաց փոխադրութեան շատ շահաբեր գործոյն պարապելով՝

շատ մեծ հարստութիւն ձեռք բերին. իբրեւ օրինակ կ'ուզենք հոս անցողակի յիշել Լեմպէրկցի հարուստ վաճառականն՝ գլխաչատուր (Քրիստոֆ) Աւետիք Պեռնաթովիչ († 1671), որ կրցաւ Լեհաստանի Վլատիսլաւ Դ թագաւորին 300.000 տուքատի այն ժամանակի համար ահագին գումարը փոխ տալ[102]:

Սուչավայի Հայոց աւանդութեան համեմատ՝ Սիմէոն (Շիմա) անուն Հայ մը 1600ին[103], Երեմիա Մոհիլաւ (1596—1606) Մոլտաւիոյ իշխանին ժամանակ, Սուչավայի Ս. Սիմէոն Ծերունի[104] (ծերունւոյ) նուիրեալ հայ եկեղեցին շինած է: Այս եկեղեցին Սուչավայի մէջ "կարմիրաշտարակ եկեղեցի„ անուամբ ծանօթ է, վասն զի զանգակատան աշտարակն մինչեւ վերջին ատեններ կարմիր ներկուած էր. այժմ թէ եկեղեցին եւ թէ աշտարակը թիթղամբ դրուագեալ է, եւ միայն աշտարակին ծայրը կարմիր մնացած է: Մինչեւ վերջին ատեններ Հայոց գերեզմաննոցն այս եկեղեցւոյն քովն էր, որ այժմ ասկէ ոչինչ հեռու՝ Զամքայի դաշտերուն վրայ ուղմամթերանոցին քով փոխադրուած է: Այս եկեղեցւոյն մէջ կը մատուցուին ննջեցելոց պատարագներ, եւ բաց անկէ՝ ամէն մեծ տօներու յաջորդ օրն կանոնաւորապէս պատարագ կը մատուցուի: Այս եկեղեցին ունի տեսակ մը պատկերաց որմ, եւ բաց անկէ՝ թանկագին վարագոյր մը, վրան Ս. Գրոց պատկերներ բանուած, որոյ արձանագրութիւնն է. "Յիշատակ է վարագոյրս Գրիգորի որդուն աստուածասէր եւ սի-

րելի Յոհաննու եւ ծնողաց իւրոց, յերկրին Պուղտանաց, ի Սեչօվ ընդ հովանեաւ Ս. Խաչ եկեղեցուն, գրեցաւ ձեռամբ Յակոբ չնչին երէցփոխին, Թ. Հ. ՌՄԺ„ (= 1761։) Այս եկեղեցւոյն մէջ կայ նաեւ Եկեղեցւոյ երից սուրբ վարդապետաց մէկ պատկերն, 1810ին նկարուած, ռումանական արձանագրութեամբ։ Եկեղեցւոյ յատակը ծածկած են բազմաթիւ տապանաքարեր՝ արձանագրութեամբք, որոնց միայն մէկ քանին ընթեռնլի է։

Նաեւ եկեղեցւոյն արեւմտեան գաւիթը կայ տապանաքար մը, հետեւեալ արձանագրութեամբ. "Այս է տապան հանգստեան Խային եւ Մուղալին, որ է դուստր եւ որդի տէր Անտոնի. հանգեաւ թվ. ՌԿԵ(է) օգոստոսի օրն Բշաբթի„* (1618)։

Ցայսօր Սուչավայի ժողովրդապետական եկեղեցին պահուած աւետարանն այս եկեղեցւոյն մէջ Սուչավացի Յովհաննէս քահանայէն գրուած է յամին ՌՂ (= 1641)։

Յամին 1622 Էջմիածնի[105] հայ պատրիարքն Մելքիսեդեկ իւր հայրենիքէն փախաւ, իւր եղբօրորդին զՍահակ իրեն յաջորդ ձեռնադրելէն ետեւ, վասն զի Պարսից Շահ Աբաս Թագաւորին պահանջած 2000 տուքադ հարկն չէր կրնար

---

* *Ըստ Բժշկեանի, (Ճանապարհորդութիւն, Վենետ. 1830, էջ 192,) իսկ գերմ. թարգմանութեան մէջ է՝ "Այս է տապան հանգստեան Նասյեայ Մուղալեան, որ է դուստր տէր Անտոնի եւ Մուղալինայ, օրն Բշաբթի ՌԿԷ:„ Ծ. Թ.*

վճարել, եւ Ղահն ալ ասոր աթոռանիստ տեղին կործանած էր: Մելքիսեդեկ Լեհաստան եկաւ բնակեցաւ, ուր Մեսրոպ եպիսկոպոսին մահուանէն ետեւ՝ քանի մը տարի Լեմպէրկի եպիսկոպոսական աթոռը նստաւ, բայց յետոյ հրաժարեցաւ եւ Բոտոլըքի-կամենից գնաց, ուր եւ յամին 1627, Մարտ 18ին վախճանեցաւ[106]:

Արդ յամին 1627[107] Յայտնութեան առաջին հինգշաբթին Մելքիսեդեկ՝ հայրենի արեւելեան հայ հաւատքին յամառութեամբ յարեալ Լեմպէրկի հայ հասարակութեան կամաց հակառակ, Լեմպէրկի Հայոց եպիսկոպոս ձեռնադրեց զՆիկողայոս Թորոսեվիչ հայ քահանայն, որ դէպ ի կաթողիկէ եկեղեցի միտելուն համար քաղաքային խորհրդանոցէն կը պաշտպանուէր: Մելքիսեդեկ զինք իւր յաջորդը կարգեց եւ անոր իրաւաբանութեան ենթարկեց Լեհաստանի, Մոլտաւիոյ եւ Վալաքիոյ բովանդակ Հայերը[108]:

Բայց այս ապօրինաւոր ձեռնադրութեամբ պատրիարքն մեծամեծ խռովութեանց եւ Լեմպէրկի մեծապէս ծաղկեալ հայ գաղթականութեան անկման հիմը դրաւ. վասն զի Թորոսեվիչ եպիսկոպոսն Յիսուսեան կրօնաւորաց հետ միացած՝ ջանաց պնդութեամբ նոյն գաղթականութիւնն ի կաթողիկէականութիւն դարձընել[109]: Այս միութեան անխոհեմ փորձերն ձանձրանալի եւ անհաճոյ դատեր յառաջ բերին, որոյ վերջն եղաւ՝ որովհետեւ խնդիրն ի կողմն եպիսկոպոսին վճռեցաւ, Լեմպէրկի Հայոց մեծագոյն մասին ի

Մոլտաւիա գաղթեր[110], այնպէս որ 1652ին Լեմպէրկի այնչափ բազմաթիւ եւ ծաղկեալ Հայ գաղթականութենէն հազիւ 100 տուն մնաց Լեմպէրկ։[111]

Բնականաբար Թորոսեվիչ զՀայս դարձընելու ցուցած եռանդանն համար Ուրբանոս Ը Քահանայապետէն իրեն եւ յաջորդացը համար Արքեպիսկոպոս տիտղոսն ընդունեցաւ[112], բայց այս իրեն քիչ օգնեց, վասն զի Լեմպէրկի Հայ հասարակութիւնն քայքայած ու ցրուած էր եւ ինքն էր հովիւ մը, թէեւ ոչ՝ բոլորովին առանց հօտի, սակայն գէթ շատ սակաւ ոչխարաց։

Յամին 1649, Վասիլ Լուբուլ (Ալպանիդուլ, 1634—1653) իշխանին ժամանակ, Հայք Սուչավայի Մետրապոլտին տպարանին մէջ Աւետարան մը տպագրեցին՝ իրենց Մինաս եպիսկոպոսին հսկողութեան տակ[113]։

Նաեւ Սէրէթ քաղաքը շատ Հայք կային. այսպէս 1653ին Վուկէյցի անուամբ Հայ մը նոյն քաղաքին մէջ տուն մը եւ խանութ ունէր, բայց քիչ ետքն ստացուածքն ու քաղաքը թողուց։ Այս ստացուածքներն անցան յետոյ Ռատաուցի Քալխսդրու եպիսկոպոսին, եւ յետոյ Փուդնա վանքին։ Զայս հաստատեց 1756ին Ապր. 17ին Կոստանդին Սեհան Ռաքովիցա իշխանն (1753—1756), եւ նոյն վանքին տուաւ նաեւ մաքսէ ազատութիւն, եւ նոյն խանութին մէջ ըմպելիք ծախելու իրաւունք՝ ազատ բոլորովին հարկէ[114]։

Յամին 1654[115], ուստի Գէորգ Ստեփան Մոլտաւիոյ իշխանին ժամանակ (1653—1658),

երբ Քօզաքներու յաճախակի յարձակմանց պատճառաւ առուտուրը բոլորովին դադրած էր, Սդանիսլաւ Ռեվէրա Բօդոցքի՝ Զապլոցիէ գիւղին երկիրները Սդանիսլաւ քաղաքին տրամադրութեան տակ ձգեց, եւ հրաւիրեց Հայերը, որ գան հոն բնակին: Այն ժամանակ բազմաթիւ Մոլտաւիացի եւ նաեւ Թրանսիլվանիացի Հայեր հոն դիմեցին, այն տեղ հաստատուեցան, եւ քիչ ետքը Մոլտաւիոյ բովանդակ արջառավաճառութիւնն ձեռք անցուցին[116]:

Գէորգ Տուգա Մոլտաւիոյ իշխանին երկրորդ գահակալութեան ժամանակ, (1669—1672) Մոլտաւիացի, մանաւանդ Սուչավացի բազմաթիւ Հայեր առաջնորդութեամբ իրենց Մինաս եպիսկոպոսին, որ 1649էն ի վեր արեւելեան Հայոց եպիսկոպոսն էր եւ ի Սուչավա կը նստէր[117], ելան գաղթեցին ըստ մասին ի Լեհաստան, եւ ըստ մեծագոյն մասին իրենց եպիսկոպոսին հետ դէպ ի Թրանսիլվանիա[118]:

Հայոց իրենց եպիսկոպոսին հետ այսպէս բազմութեամբ գաղթելուն պատճառն էր այն ժամանակի հարկերու սաստկութիւնը, բայց մանաւանդ 1671ին[119] Հոկտ. 29ին Միքայէլ Հընգուլ անուն անձի մը (որ շատ հաւանական է թէ Հայ մ'ըլլայ,) Պօյարներու նիւթած դաւաճանութեան Հայոց մասնակցելուն համար՝ իշխանէն կրած հալածանքն[120]:

Հայք ի սկզբան Քարպադեան լեռներն ապաւինեցան. եւ երբ տեսան որ իշխանն իրենց կողմն շահիլ չկրցան, անցան Թրանսիլվանիոյ սահ-

մանը եւ Սէքլէրներու Պիսթրից քաղաքն հաստատուեցան։ Հոս Միքայէլ Ա Աբաֆի իշխանն (1661—1686) զիրենք ընդունեցաւ՝ երբ իրենք իրենց Մինաս եպիսկոպոսին հետ խոստացան լատին եկեղեցւոյ միութեան մէջ մտնել[121]։ Սակայն իրենց իրական եւ վերջնական միութիւնն եղաւ Աքսէնտ Վէրզիրէվսքի հայ քահանային ձեռօք, որ յատկապէս այս նպատակաւ Թրանսիլվանիա եկաւ, եւ համոզեց իւր այս ազգակիցներն որ Հռոմայ հետ միանան, եւ իրենց Մինաս եպիսկոպոսը Լեմպէրկ երթայ հոն հրապարակաւ դաւանութիւն տալու համար։ Մինաս 1686ին[122] Լեմպէրկ գնաց, եւ Բալլավիչինի կարդինալին եւ հայ-կաթողիկեայ Վարդան Արքեպիսկոպոսին[123] առջեւ († 1715)[124] դաւանեցաւ լատին եկեղեցւոյ հաւատքն, եւ խոստացաւ նաեւ իւր ազգակիցները ապահովապէս համոզել նոյնն ընելու[125]։

Թրանսիլվանիոյ այս առաջին հայ-կաթողիկեայ եպիսկոպոսն Մինաս՝ առաւ Պուղտանաց եւ Մոլտաւիոյ եպիսկոպոսի տիտղոսն, բայց չկրցաւ երկայն ատեն վայելել, վասն զի նոյն տարին՝ 1686ին Լէմպէրկի մէջ վախճանեցաւ*։ Յամին 1687 փետր. 13ին՝ Եղիա Մէնտրուլ հայ աւագերիցուն խնդրանօք Լեմպէրկի հայ կաթողիկեայ արքեպիսկոպոսն՝ Վարդան Յունանեան նոյն միաբանասէր Աքսէնտ Վէրզիրէվսքի քահանան Թրանսիլվանիոյ Հայոց եպիսկոպոսական փոխա-

---

* Ոչ ի Լեմպէրկ, այլ Հունգարիոյ լերանց մէջ վախճանեցաւ իւր քաղաքը դառնալու ժամանակ: Ստեփ. Ռոշքա, Ժմնկգր. յամին 1686: Ծ. Թ.

նորդ (Vicar) եւ վարիչ (Administrator) անուանեց[126]։

Թրանսիլվանիոյ Հայք թէեւ լատին եկեղեցւոյ հետ միացան, սակայն այն ատեն ունէին տակաւին արեւելեան սովորութիւններ, այսպէս պատարագի մէջ իրենց արեւելեան պատրիարքը կը յիշէին, եւ ոչ՝ զՔահանայապետն Հռոմայ, Ծննդեան եւ Յայտնութեան տօնը միեւնոյն օրը կը տօնէին, նաեւ տղոց Հաղորդութիւն կու տային[127], եւ վերջապէս կուսանաց միայն տարին երեք անգամ եկեղեցի երթալ թոյլ կու տային[128]։

Մինաս եպիսկոպոսին Սուչավայէն մեկնելէն ետեւ, Լատինք աշխատեցան, որ Մոլտաւիոյ հայ եպիսկոպոս մը դնեն, թէեւ միայն անուամբ, եւ այսպէս 1669ին կը գտնենք Յովհաննէս Քէրէմովիչ անուն Մոլտաւիոյ եպիսկոպոս մը եւ Լեմպէրկի Արքեպիսկոպոսին տեղակալ[129]։ Թէ այս եպիսկոպոսն իրօք միայն անուամբ էր, կը տեսնուի Տ. Լուդովիկոս-Մարիամ Բինտու (Յիսուսեան) կրօնաւորին 1669 Ապր. 1ին գրածէն[130], որ Հայերն դարձընելու համար Մոլտաւիա ղրկուած էր. ասիկայ կը յիշէ՝ որ այն ժամանակի Յակոբ կաթողիկոսէն ձեռնադրեալ 50 ամեայ Սահակ եպիսկոպոսն Մոլտաւիոյ՝ 20 քահանայ ունէր իշխանութեանը տակ։

Բինտու նաեւ կարեւոր տեղեկութիւններ կու տայ Մոլտաւիոյ հայ եկեղեցւոյն այն ժամանակի վիճակին վրայ. վասն զի կ՚աւանդէ՝ թէ Եաշ. իշխանական մայրաքաղաքին Հայերն երկու եկեղեցի, Կալացի, Սէրէթի[131], Հոթինի եւ

Պոլթուշանի Հայերն, մէյ մէկ եւ Սուչավայի Հայերն վանք մը եւ երկու եկեղեցի ունին[132]։

Հօրն Բինտուի այս տեղեկութիւններէն կ'երեւայ, որ Հռոմէական եկեղեցին Լիհաստանի եւ Մոլտաւիոյ Հայոց դարձին շատ կ'աշխատէր, որ մասին — ինչպէս քիչ ետքը պիտի երեւայ — մինչեւ մեր ժամանակները կ'աշխատի։

Յովհաննէս Գ. Սոպիեսքի Լեհաց թագաւորին Տաճկաց դէմ վարած պատերազմին ժամանակ, եւ երբ Մոլտաւիոյ իշխեցին՝ Ստեփան Բեդրիչէյլքու., (1672—1674) Տիմիդրաշքու Քանդաքուզին (1674—1676) եւ Կոստանդին Քանդեմիր (1685—1691), Մոլտաւիոյ բնակիչներէն շատերը փախան, եւ երբ Լեհերն յամին 1675 Հոկտ. 15ին եւ յետոյ յամին 1686 Հոկտեմբերին[133] Սուչավա քաղաքն այրացուեր ըրին, քաղաքին ամէն բնակիչներն՝ նաեւ Հայք փախան, այնպէս որ Լեհք երբ ներս մտան, հոն մի միայն անձ մը գտան Դուրքուլէց անուամբ[134]։

Շմիտ իւր Յիշատակարանաց 187ր էջին մէջ կը պատմէ՝ թէ Սոպիեսքի յամին 1686 Հոկտ.ին իւր աւերիչ արշաւանքէն դարձած ժամանակ՝ անցնելով Մոլտաւիոյ մէջէն, Սուչավա 14 օր կեցաւ մինչեւ որ կայսերական օգնական գունդն հասնի, եւ այս միջոցին այն ժամանակի մի միակ[135] ամրութիւնն՝ զՋամքա հողաբլրով ամրացուց, որ մինչեւ ցայսօր կը կենայ։ Բայց այս պարագայն անոր համար չի կրնար ճիշդ ըլլալ, որ Սոպիեսքին ատով այս ամրութիւնն իրեն դէմ զօրացուցած կ'ըլլայ։ Բայց ստոյգ է որ Սո-

պիեսքիի գունդն յամին 1691 աշնան այս հողաբլուրն վար առաւ, երբ երրորդ անգամ Մոլտաւիա արշաւեց, շատ քաղաքներ ու գիւղեր աւար առաւ, եւ աշնան ետ դառնալով՝ ի Նէամց, ի Սուչավա հայ վանքին մէջ, ի Քըմբուլունկ, Հանկուլ, Սէքուլ եւ Ակաբիա ամրականներ թողուց։

Զամքայի լեհական ամրոցն (Հայոց վանքն) Կոստանդին Քանդէմիր իշխանին յարձակումներէն շատ բան կրեց, եւ որպէս զի ամրականք այս իշխանին դէմ իրենք զիրենք առաւել եւս պաշտպանեն ամրոցին հարաւակողման պատերը նորոգեցին, որ ցայսօր կ'երեւայ, եւ շրջապատեցին ամբողջն հողաբլրով, որ ցայսօր կեցած է։ Զամքայի եւ վերոյիշեալ ամրութեանց ամրականները նոյն տեղերէն մեկնեցան Քարլովիցի խաղաղութենէն ետեւ, յամին 1699 Յնր. 26[136]։

Յամին 1690 Հոկտ. 3, ուստի վերոյիշեալ Կոստանդին Քանդէմիր՝ Մոլտաւիոյ իշխանին ժամանակ, Աղեքսանդր Ը Քահանայապետն հաստատեց զԱքսէնդ Վէրզիրէվսքի, զոր Լեմպէրկի Հայ-կաթողիկեայ Արքեպիսկոպոսն Վարդան Յունանեան յամին 1687 փետր. 13ին Թրանսիլվանիոյ եւ Մոլտաւիոյ Հայոց եպիսկոպոսական փոխանորդ եւ տեղապահ անուանած էր։ Վէրզիրէվսքի նոյն Արքեպիսկոպոսէն յամին 1691 Յուլ. 30ին Լեմպէրկի մէջ եպիսկոպոս ձեռնադրեցաւ[137], եւ ձեռնադրութեան ներկայ գտնուեցաւ Մոլտաւիոյ հայ աւագերէցն՝ Եղիա Մընտրուլ Սուչավացին, որ եւ հոն հռոմէական հաւ-

ատոյ դաւանութիւն տուաւ, զոր արդէն յառաջագոյն տուած էր Կարդինալ Կանդելմոսի առջեւ ի Վարշաւա,՝ ուր ուրիշ ութը նշանաւոր եկեղեցականաց հետ գացած էր միութեան դաւանութիւնը տալու[138]։

Սակայն Վերզիրէվսքի եպիսկոպոսն ձախորդութիւն ունեցաւ, վասն զի յամին 1697 Պիստրիցի առման ժամանակ Տաճիկներէն գերի բռնուեցաւ, եւ Հազիւ Քարլովիցի խաղաղութենէն ետեւ յամին 1699 ազատ թողուեցաւ։ Վերզիրէվսքի մեռաւ յամին 1715 ի Վիեննա[139]։

Սուչավայի ստորագրութիւն մը, 1693ին լատին լեզուաւ գրուած[140], կ'ըսէ. "Սուչավայի Հայոց թիւն տղոց հետ մէկտեղ 3000 է, ունին 4 եկեղեցի, որոնցմէ 3ը ժողովրդապետական եկեղեցի է. եկեղեցիք են Ս. Երրորդութիւն, Ս. Խաչ, Ս. Սիմէոն։ Այս իւրաքանչիւր եկեղեցեաց ժողովրդապետներն 150 ընտանիքէ կը հոգացուին։ Հայ եպիսկոպոսը քաղաքէն դուրս կը բնակի (Զամքա)։ Սուչավայի հարաւային կողմը քառորդ մղոն հեռու կայ կուսաստան մը[141], որուն եկամուտքէն խաղաղութեան ժամանակ 40 կոյս եւ այրի ի միասին մէջը կ'ապրին։ Ամէնքը կ'ապրին ըստ հին սովորութեանց՝ առանց պարտաւորիչ կանոն կամ իրական ուխտ ունենալու, բայց ամենայն ջերմեռանդութեամբ եւ համեստութեամբ։„

Կոստանդին Տուքա Մոլտաւիոյ իշխանին ժամանակ (1691—1696) Հայ-կաթողիկեայ Քորեպիսկոպոսն Աստուածատուր Ներսէսեան[142],

Եպիսկոպոս Տրայանուպոլսոյ ի կողմանս անհաւատից (in partibus infidelium), Թղթեր առած Լէոպոլտ Ա. կայսրմէ, եւ Լեհաց Օգոստոս Բ. Թագաւորէն եւ Առաքելական Աթոռէն, որ ամենայն կերպով կը ջանար Մոլտաւիոյ Հայերն ի միութիւն բերել, ուղեւորեցաւ Մոլտաւիա առ իշխանն, — հաւանականաբար այն ժամանակ կ'իշխէր Անդիոյ Քանդէմիր իշխանն (1696—1701), որ այնչափ հաւանական կ'երեւայ, որչափ Օգոստոս Բ հազիւ 1697ին Յունիս 27ին[143], Սոպիեսքիի 1696ին Յունիս 17ին վախճանելէն ետեւ, Լեհաց Թագաւոր եղաւ —: Ներսէսեանի դիտաւորութիւնն էր իշխանէն հրաման առնուլ՝ որ Մոլտաւիոյ արեւելեան հայ եկեղեցիները Լեմպէրկի կաթողիկեայ հայ Արքեպիսկոպոսին իրաւաբանութեան ենթարկուին. բայց այս չյաջողեցաւ իրեն:

Յամին 1704, Մոլտաւիոյ Միքայէլ Ռաքովիցա իշխանին ժամանակ (1703—1705) Սուչավայի հայ հասարակութիւնն աճեցաւ, երբ Թրանսիլվանիոյ Եղիսաբեթուպոլիս (Պաշպալով) քաղաքէն Հայեր Սուչավա գաղթեցին, վասն զի Թրանսիլվանիոյ իշխանն Փրանկիսկոս Բ Ռաքոսի Հայոց ստացուածքներն յափշտակել եւ տներնին այրել հրամայեց, Հայոց իրենց կայսեր հաւատարիմ մնալուն համար[144]:

1707ին Մարտ 10ին Լեմպէրկցի հարուստ հայն՝ Դոմինիկ[145] Պոկտանովիչ 300 լեհական ֆլորին կտակեց Սուչավայի Ս. Աստուածածնի հայ եկեղեցւոյն (Հաճկատար) Նորոգութեան

համար, զոր իւր Նախահաւն Տրական Տանովաք շինած էր, եւ որ թշնամեաց յաճախ յարձակմամբն շատ վնասուած էր[146]։

Յամին 1762 Հայ մը ծախեց իւր երկիրներն, որ Քոզմանի շրջանակին մէջ էր, Քրիստիանի զօրապետին՝ Փիլիպպինի (Prilipcze) գերմանացի գաղթականաց համար[147]. սակայն այս գաղթականութիւնն չկրցաւ այս երկիրները ձեռք բերել, մանաւանդ թէ գրաւականն ալ կորսնցուց, վասն զի հաւանօրէն ծախողն երկրին բուն տէրը չէր այլ վարձակալը, եւ հետեւաբար ծախելու իրաւունք չունէր։

Երբ աւստրիական բանակը Պուքովինա գրաւեց, Ֆոն Սբէնի զօրապետն 1775ին միայն 58 Հայ[148], 2 հայ քահանայ եւ 1 սարկաւագ գտաւ[149]. իսկ Կարոլոս Ֆրայհէր Ֆոն Էնցէնպէրկ, որ 1778 Ապրիլէն մինչեւ 1786 Հոկտ. նոյն երկիրը կառավարեց[150], 200 հայ ու յոյն կալուածատէրներ գտաւ, մեծ եւ հարուստ մասն Սուչավա քաղաքը կը բնակէին, ուր 1778—1779 գրեթէ 60 փայտաշէն տուն շինել տուին։

Էնցէնպէրկ զօրապետն յետոյ Սուչավայի մէջ 118 հայ ընտանիք գտաւ[151]։ Էնցէնպէրկի վարչութեան ատեն Հայք ստոյգ 200 հոգիէ աւելի էին, վասն զի իւր գտած 118 ընտանեաց իւրաքանչիւրն եթէ միայն 3 հոգիէ բաղկանար, որ ստուգիւ շատ նուազ հաշուուած է, Սուչավացի Հայերն 350 եւ թերեւս աւելի կ՚ըլլան։ Թէ Պուքովինայի գրաւման ժամանակ նոյն տեղ աւելի էին թուով, քան որչափ պաշտօնապէս կը

հաշուուէր, յայտնի է նաեւ Շլէօցէրի Թղթակ-ցութենէն[152], ուր կը կարդանք թէ 1779ին Սու-չավա 131 հայ ընտանիք կը բնակէին։

Այն ժամանակի Հայոց մէջ ի մասնաւորի կը յիշուի Սուչավացի հարուստ վաճառական մը[153], Յովհաննէս Քաբրի, որ ամէն տարի 3000 ֆլորինէ աւելի մաքս կը վճարէր[154], եւ Սոլքա վանքին պատկանեալ Եակոբեշտի կալուածներու կէսը կը վարձէր, որ Մոլտաւացի Սէքլէրներու գաղթականութեան սահմանեալ էր[155], եւ որ "Գրայհէր„ ազնուականութեան աստիճանին ամ-բարձուած էր՝ Պուքովինայի արեւելեան Հայերն հռոմէական եկեղեցւոյ միաբանութեան բերելու օգնելու համար։

Պուքովինայի գրաւման ժամանակ Գրիգոր փունդուլ անուամբ հայ մը կար՝ որ Պուքովի-նայի դատաւոր էր. ասոնց որդիքն Յարութիւն, Ղուկաս եւ Խաչերես (Cirste) 1790ին իրենց մոլտաւեան ազնուականութեան հաստատու-թիւնն ընդունեցան։

Յետոյ Թրանսիլվանիայէն շատ Հայեր եկան Պուքովինա, եւ ծանուցին որ Սուչավա կը հաս-տատուին եւ տուն կը շինեն, եթէ Սուչավայի բերդերու աւերակներէն իրենց ձրի քար տրուի[156]։ Դժբախտաբար իրենց խնդիրքը կատարուեցաւ ի վնաս պատմական յիշատակարանաց[157]։

Բերդին աւերակներուն քարերէն Հայք տներ շինեցին, որոնք Սուչավայի Հայոց թաղին մէջ ցայսօր կ'երեւան՝ մոլտաւական ոճով գաւ-թին մէջտեղը գիւղական շէնքերու նման քարե-

ղէն տներ։ Պարոն Քաբրի քաղաքին մէջտեղը նոյն քարերով շինեց այն մեծ շէնքն որ այսօր Hôtel Langer կը կոչուի[158], որուն մառանը մէկ դստիկոն բարձր է[159]։ Այսպիսի դստիկոնաչափ բարձր միջինդարեան մառաններ, որոնց վրայ երբեմն Մոլտաւիոյ իշխանաց պալատը կար, կան Hôtel Langerէն 50 քայլ հարաւակողմն եղող տան տակ, որ երբեմն Hôtel de Moldavie կը կոչուէր, նոյնպէս այն մէկ դստիկոն տան տակը, որ արեւելեան-յունական բարձրագոյն գիմնասիոնին քով եւ Ս. Դեմետրիոս եկեղեցւոյն դիմացն է[160]։ Տեղական ռոմանական աւանդութիւնը կ՚ըսէ՝ թէ այս վերջին մառանն թէ Hôtel Langerի եւ թէ Hôtel de Moldavieի մառաններուն հետ յարաբերութեան մէջ է, եւ թէ՝ գլխաւոր փողոցին եւ Ս. Դեմետրիոս եկեղեցւոյ տակէն անցնելով՝ կ՚երթայ տեղ մը Սուչավա գետին մէջ կը հանէ։ Այսպիսի գետնափոր, կոփածոյ քարէ շինուած եւ քարպայտակ հին մառանի մը բերանն կայ ցայժմ Հայոց ժողովրդապետական եկեղեցւոյն եւ Landwehr զինուորանոցին մօտ՝ Միքայէլ Աբրահամ Սուչավացւոյն պարտիզին մէջ։

Յամին 1776 Լեմպէրկցի հայ վաճառականն Նիկորովիչ[161] առաջարկեց Տաճկաստանէն եւ Մոլտաւիոյ Պոթուշան քաղաքէն շատ հայ ընտանիքներ Պուքովինա եւ ի Սուչավա գաղթական բերել այն պայմանաւ՝ որ Սուչավա քաղաքն վաճառականական ազատ քաղաք ըլլայ, ինչպէս Կալիցիոյ Պրոտի քաղաքը, զոր Յովսէփ

Բ. կայսրն 1786ին յանձն առաւ[162]։ Կ'երեւայ թէ Տաճկաստանի կողմանէ դժուարութիւնք ելած են այս խնդիրն գործադրելու։

Յամին 1781 Սուչավա հազիւ 129 հայ ընտանիք[163] եւ յամին 1786՝ 114 ընտանիք[164] կային։ Սակայն 1802ին շատցան հայ ընտանիք մինչեւ 205 ընտանիք 965 հոգւով[165]։ Յամին 1820 Սուչավա կար 200 հայ տուն[166], ուրեմն կրնանք 200 ընտանիքէ աւելի համարիլ։ 1825ին Սուչավա կային 250, յամին 1857 նոյն իսկ 530[167] եւ այսօրս գրեթէ 300 հայ ընտանիք 1200 հոգւով։

Միաբանութեան աւանդական ճիգը Մոլտաւիոյ արեւելեան Հայոց վրայ նաեւ այն ատեն եռանդեամբ գործադրուեցաւ, երբ Պուքովինա Աւստրիական կայսրութեան անցաւ, եւ Յովսէփ Բ. կայսեր բաղձանաց համեմատ[168] յաճախ առաքեալներ ղրկուեցան Սուչավայի Հայոց։

Այս վախճանաւ նախ Քրիստափոր Քուրպուլի հայ-կաթողիկեայ վարդապետն եւ Թրանսիլվանիոյ ժողովրդապետն 1782ին Սուչավա ղրկուեցաւ, ուր եւ հասաւ 1782 Մայիս 10ին[169], եւ սկսաւ աշխատիլ Հայերը դարձընելու։ Կ'երեւայ թէ իւր արդիւնքն եղաւ ոչինչ. եւ այս փորձերն կայսեր հրամանաւ 1783 Յունիս 4ին՝ թէեւ առ ժամն՝ ի կալս թողուեցաւ[170]։

Յամին 1796 այս փորձեր կրկնուեցան, վասն զի Սուչավայի Հայոց ղրկուեցաւ հայ-կաթողիկեայ վարդապետն Յովսէփ Մոշորոյ[171] — որուն տնէն ցայսօր Չեռնովից կայ ընտանիք մը.

— սակայն հաւանականաբար Քորպուլէի պէս ուազ արդեամբք։

Կ'երեւայ թէ այնուհետեւ այս փորձերէն ձեռնթափ եղան, մինչեւ որ 1828ին բարձրագոյն հրամանաւ վերստին նոյնին ձեռնարկուեցաւ. այս ժամանակ Հ. Պօղոս Վ. Ցովհաննեան Վիեննայէն ղրկուեցաւ Սուչավա, որ հայերէն լեզուաւ կը յորդորէր Հայերն ի միութիւն, բայց չկրցաւ արդիւնք մը յառաջ բերել[172]։ Նաեւ անօգուտ եղաւ Լեմպէրկի հայ-կաթողիկեայ Արքեպիսկոպոսին՝ Սամուէլ Ստեփանովիչին երկու անգամ ի Սուչավա երթն եւ յաճախակի քարոզութիւնն, որ եւ Հայոց ժողովրդապետական եկեղեցւոյն մէջ Յովհաննէս Պոթուշան հայ արեւելեան քահանային հետ “եւ յՈրդւոյ„ յաւելուածին վրայ վիճեցաւ, եւ քահանայն անոր այս միացընելու փորձին համար՝ հրապարակաւ անէծք կարդաց անոր վրայ։ Այսպէս նաեւ անպտուղ մնացին յաջորդ առաքեալներուն եռանդուն ճիգերն, որպիսիք են՝ Փլորիան Միդուլաքի 1839ին, Իսակովիչ, Իգնատիոս Ստեփանովիչ[173] եւ այժմ Ա. Դաւիթովիչ։

Պուքովինայի գրաւման ժամանակ՝ որովհետեւ Սուչավայի արեւելեան Հայք սեպհական եպիսկոպոս չունէին եւ ոչ ալ աւստրիական կայսրութեան մէկ երկրին մէջ կար, Յովսէփ Բ կայսրն[174] Աստրախանի Յովսէփ Արղութեանց Արքեպիսկոպոսին խնդրանաց համեմատ՝ 1786 Մարտ 15ին հրաման տուաւ, որ Պուքովինայի Հայք իրենց քահանայքը հայրենիքէն բերել

տան, Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարքին իրաւաբանութեան տակ ըլլան, եւ ասոր հետ հպատակին Էջմիածնի կաթողիկոսին՝ որ ի Հայս Ռուսաց[175]:

Ի վերջոյ կ՚ուզենք հռոմէական եկեղեցւոյ հետ միացեալ Պուքովինայի Հայոց վրայ ալ քանի մը խօսք ըսել:

Միացեալ Հայք կալիցիայէն եկան Պուքովինա արդէն ազգայնութիւննին կորուսած եւ բոլորովին լեհացած, ըստ մասին Չեռնովից եւ ըստ մասին Սերէթ հաստատուեցան, ոմանցի Պօյարներու կալուածները վարձեցին — որոնք աւելի սիրով Մոլտաւիա կը բնակէին[176] — ինչպէս նաեւ արեւելեան-յունական եկեղեցւոյ կալուածներն, եւ խնայութեամբ ու աշալրջութեամբ ագարակներ մշակելով՝ ժամանակաւ նոյն տեղերու կալուածատէրն եղան[177]:

Այսպէս Պոկտան Ստեփան անուն հայ մը Սդանիսլաւէն Պուքովինա եկաւ եւ Փալատի ռումեան Պօյարէն՝ Օրըշէնեի անուն կալուածը գնեց, եւ գնման դաշինքը կատարելու համար, ինք զինք պարտաւորեց գրաւորապէս 1781 Յունիս 8ին՝ որ նոյն տեղը նոր գիւղ մը հաստատէ եւ սեպհական ծախիւք 50 գերմանացի ընտանիք հոն գաղթական բերէ: Բայց երբ նոյն տարւոյ Յուլիս 7ին իւր գնումն պաշտօնապէս հաստատեցաւ, իւր պարտաւորութեան կատարումը մոռցաւ, թէեւ այն շատ անգամ իրեն յիշեցուեցաւ[178]:

Այս կաթողիկեայ եւ ի մասնաւորի Չեռնո-

վից գաղթող Հայոց մասին Յովսէփ Բ կայսրն 1783ին գրած հրովարտակին մէջ կ'ըսէ. "Տեղւոյս (Չեռնովիցի) հայ հասարակութիւնն, որուն ստուածային պաշտամանց եւ անձամբ ներկայ գտնուեցայ, է՝ բաց ի սակաւուց, ուրիշ հայ կաթողիկեայց հաւասար: Անոր համար այսուհետեւ իրենց կրօնին քննութիւն չկատարուի, եւ զիրենք իրենց առուտուրին մէջ անհանգիստ պէտք չէ ընել, այլ աշխատելու է ուրիշ այսպիսի մարդիկ ալ հոս բերել[179]:„

Այսպիսի կաթողիկեայ Հայեր, որք երբեմն արեւելեան էին, շատ կային ի Պուքովինա, եւ այստեղ կալուածներ ունէին, զորոնք յետոյ թողին եւ կալիցիա մեկնեցան:

Այսպէս կը գտնենք՝ որ Քրիստափոր Աբրահամովիչ ստացաւ զՀլիպոքա, եւ Յովսէփ Աբրահամովիչ զՏորոշուց եւ զԹօուդրի[180]:

Ներսէս, Ստեփան եւ Նիկողայոս Այվազ, որոնք Չեռնովից գաղթած էին, 1789ին կայսերական հաւանութեամբ գնեցին Միդքըու կալուածն, յետոյ նաեւ Ռոսդոքի, Սէրէթ գետի քով Սդանէշդի, Սինըուց եւ Վիժնից կալուածներն:

Միքայէլ, Իգնատիոս, Յակոբ, Գրիգոր, Ղազար եւ Կայեդան, որդիք Անտոն Անտոնեվիչի, որ "Cap de bou Jacubowicz„ կը կոչուէր, ստացան Պէրհոմէթ, Օշէխլիպ եւ Քուչուրմիք կալուածները:

Աստուածատուր եւ Յովհաննէս Պոկտանովիչ գնեցին Օրըշէնեի:

Քրիստոֆոլիչի որդիքն, որ Հայաստանէն եկած էին եւ ի Սէրէթ հաստատուած, յետոյ Քարաբչիու կալուածները գնեցին:

Մալեվիչ Յովհաննէս եւ Անտոն ստացան Մալէդինէց եւ Սդաուչէնի կալուածները:

Միքուլի Ստեփան, Յակոբ, Յարութիւն, Նիկողայոս եւ Թէոդոր ստացան Վասլաուց, Մամորնիցա, Լուքավիցա եւ Ցուրին կալուածներն, եւ Միքուլի Լուիզ՝ Քանդաքուզինոյ իշխանէն գնեց Նուժինէց կալուածն:

Մոշոր ընտանիքն հիմնադիր եղաւ Մոստրիուքայի գաղթականութեան:

Բասաքաս գնեց Վիդէլիուքա կալուածն:

Կայեդան, Աբրահամ եւ Պետրոս Պետրոսեանք գնեցին Ջատուպրիուքա կալուածն:

Նիկողայոս Փեդուլ հայն, որ Հայաստանէն եկած էր, ի Սէրէթ հաստատուեցաւ. իսկ որդիքն Կալիցիա անցան:

Յակոբ Միքայէլ եւ Գրիգոր Ռոմաշքաններն որոնք 1792ին Մոլտաւիայէն եկած էին եւ Չեռնովից կը բնակէին, Տոլհոբոլէ, Իսբաս եւ Բուդիլլա կալուածները գնեցին[181]:

Յակոբ Սիմոնովիչ ստացաւ Ռէվաքաուց կալուածն, եւ վերջապէս Ծատուրովիչք գնեցին Լէնչէշդի եւ Շերըուց կալուածներն[182]:

Ցայսօր Պուքովինա բնակող կաթողիկեայ կալուածատէր Հայերն ունին ի Չեռնովից Շլանկէնկասսէ փողոցի վրայ գեղեցիկ եւ որմապատ եկեղեցի մը, որ 1870—1875ին շինուած է դրամաժողովով, եւ նուիրուած է Պետրոս եւ

Պաւղոս Առաքելոց։ Իրենց հովիւն է Ծերունի կանոնիկոսն Փլորիան Միդուլսքի, որուն մի մի օգնական տրուած է ի Չեռնովից եւ ի Սուչավա։

Այս միացեալ Հայք այսօրս իբրեւ Լեհ կ'ապրին[183], եւ միայն Հայ եկեղեցին եւ Հայերէն պատարագը կը յիշեցընեն իրենց Նախնաբար Հայ ազգէ ըլլալը։

Վերջին ժամանակներս Հռոմ համոզեց Լեմպէրկի Հայ կաթողիկեայ Արքեպիսկոպոսն, որ վերջնականապէս եւ ամբողջապէս միանայ Նաեւ յարարողականս լատին եկեղեցւոյ հետ եւ լատիներէն պատարագ մատուցանեն, որ եւ պիտի ըլլար, եթէ այս վերջին րոպէին այս լեհախօս Հայոց մէջ ազգայութեան կայծը չբորբոքէր, եւ իրենց Առաջնորդին ուղղած թղթով չպահանջէին՝ որ իրենց թող տրուի հայ ազգայնութեան վերջին յիշատակն՝ հայերէն պատարագն, ապա թէ ոչ՝ արեւելեան Հայ եկեղեցւոյ կ'անցնին։*

---

* Ճշդիւ աստր հակառակն հանդիպած է՝ որչափ մենք գիտենք. այսինքն՝ Հռոմ Լեմպէրկի հայ Արքեպիսկոպոսին հարցուցած է՝ թէ ինչո՞ւ հայ կղերն իւր սեպհական ծէսը չի պահեր ի Կալիցիա. որուն պատասխան տրուած է՝ թէ դարեր գործած են այս չարիքն. որուն առջեւ առնուլ շատ դժուարին է։ Ծ. Թ.

## ԳԼՈՒԽ Բ.

*Թուրքիոյ արեւելեան Հայոց կրօնական յատկութիւններն ու սովորութիւնները :*

Յայտնի է թէ արեւելեան Հայք Եւտիքէսի հետեւող կը համարուին, եւ թէ Քրիստոսի երկու բնութեանց՝ աստուածային եւ մարդկային բնութեանց չեն հաւատար, եւ թէ կը մերժեն Քաղկեդոնի (4ր ընդհանուր) ժողովը, որ Քրիստոսի երկու բնութիւն ունենալուն վարդապետութիւնը հաստատեց[1]:

Քաղկեդոնի ժողովը մերժելնուն պատճառն այն է, որ այս ժողովոյն մէջ հաստատուած վարդապետութիւնը չհասկցան. որուն պատճառն էր հայերէնի աղքատութիւնը նկատմամբ յունարէն լեզուին: Այսպէս Հայերը չունէին հետեւեալ յունարէն բառերու համապատասխանող բառեր[2] այս է՝ φύσις = բնութիւն, οὐσία = գոյացութիւն եւ ὑπόστασις = անձն. այնպէս որ երբ Յոյնք կ'ըսէին՝ Յիսուս ունի երկու φύσις (բնութիւն), Հայք կը կարծէին թէ կ'ըսուի՝ երկու ὑπόστασις (անձն), եւ անոր համար կ'ըսէին՝ թէ Քրիստոս մի միակ անձն է:

Սակայն այսօրս արեւելեան հայ եկեղեցին Քրիստոսի երկու բնութեանց վարդապետութիւնը կը դաւանի, որ կ'երեւայ Քրիստոսի կողն

խոցող գեղարդին վրայ շինուած շարականէն, ուր կ'ըսուի. "Ուրախ լեր ամենուրեք օրհնեալ ծաղիկ, որ մխեցար յարիւն Տեառն մերոյ Յիսուսի, եւ կտրեցան արմատք ախտից եւ ցաւք մեղաց։ Քեւ ցուցաւ մեզ խաչեցեալն՝ Աստուած եւ մարդ ստոյգ եւ կենդանի*։„

Նոյնպէս արեւելեան հայ եկեղեցին կը նզովէ զեւտիքէս եւ անոր հետեւողները, եւ զանիկայ հերետիկոսաց մէջ կը դասէ։ Այլ եւ ամէն ընդհանուր սիւնհոդոսները կ'ընդունի, բաց ի չորրորդէն, ինչպէս որ Հայոց կաթողիկոսն Յովհաննէս 1848ին Ռուսաց Նիկողայոս կայսեր գրած թղթոյն մէջ կը դաւանի[3]։

Արեւելեան Հայք ունին շատ հին պատարագամատոյց, զոր Հայոց Առաքեալն Ս. Գրիգոր Լուսաւորիչ լրացուցած է եւ զայն մինչեւ ցայսօր կը գործածեն. ասիկայ Սահակ, Մեսրոպ, Գիւտ եւ Մանդակունի կաթողիկոսներն ամբողջացուցած են[4], եւ Ս. Բարսղի եւ Յովհ. Ոսկեբերանի պատարագամատոյցին շատ նման է։ Հայոց հաւատոյ հանգանակն որթոդոքս եկեղեցւոյ հանգանակին հետ նոյն է՝[5] առանց "եւ

* Այս աղաւաղեալ վկայութեան բնագիրն հետեւեալն է՝ ըստ Շահխաթունեանցի, (Ստորագրութիւն Կաթ. Էջմիածնի, յԷջմիածին 1842, Հտր. Ա. էջ 49) "...Գեղեցիկ զոյն զովելի ներկեալ արեամբն Յիսուսի...: Աստուածամուխ սուսերդ աստուածախառն զօրութեամբ՝ որով կտրին արմատք ախտից եւ ցաւք մեղաց եւ յանցանաց...: Գեղապաճոյճ Գեղարդն սուրբ եւ թարգմանիչ անմահ Որդւոյն, որով ցուցաւ Աստուած եւ մարդ՝ ըստոյգ մեռեալ եւ կենդանի՝ յոր հաւատաց հարիւրապետն...:„

յՈրդւոյ„ յաւելուածի.[6] սակայն ունի ինչ ինչ յաւելուածներ. ինչպէս՝ "Հաւատամք ...որով ամենայն ինչ եղեւ յերկինս եւ ի վերայ երկրի, երեւելիք եւ աներեւոյթք... մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարիամայ սրբոյ Կուսէն Հոգւովն սրբով ...ճշմարտապէս եւ ոչ կարծեօք: Չարչարեալ (կը պակսի՝ վասն մեր եւ Պոնտացւով Պիղատոսիւ) խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ (կը պակսի՝ ըստ Գրոց) ելեալ ի յերկինս նովին մարմնովն նստաւ ընդ աջմէ Հօր: Գալոց է նովին մարմնովն եւ փառօք Հօր ի դատել...:

"Հաւատամք եւ ի սուրբ Հոգին (կը պակսի՝ ի Տէր ի կենդանարարն, որ ի Հօրէ ելանէ, որ ընդ Հօր եւ ընդ Որդւոյ ի միասին երկրպագեալ եւ փառաւորեալ,) յանեղն եւ ի կատարեալն, որ խօսեցաւ յօրէնս եւ ի մարգարէս եւ յաւետարանս, որ էջն ի Յորդանան եւ քարոզեաց զԱռաքեալսն (զՔրիստոս) եւ բնակեցաւ ի սուրբսն: Հաւատամք եւ ի մի միայն ընդհանրական եւ առաքելական եկեղեցի (կը պակսի՝ դաւանիմ) ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, ի քաւութիւն եւ ի թողութիւն մեղաց (կը պակսի՝ ակն ունիմ) ի յարութիւն մեռելոց, ի դատաստանն յաւիտենից հոգւոց եւ մարմնոց յարքայութիւն երկնից եւ ի կեանսն յաւիտենականս (կը պակսի՝ յաշխարհն որ գալոցն է, ամէն): Իսկ որ ասենն էր երբեմն յորժամ ոչ էր Որդին, կամ էր երբեմն յորժամ ոչ էր սուրբ Հոգին, կամ յոչէից եղեն կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին կամ զսուրբ Հոգին, եւ թէ փոփոխելի են կամ այլայլելի, զայնպիսիսն նզովէ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցի:„

Արեւելեան Հայք կը հաւատան թէ Ս. Աստուածածին միշտ կոյս մնացած է, բայց կ'ըսեն թէ սկզբնական մեղքէ ազատ չէ մնացած[7]. ունին որթոդոքսներու եւ լատինաց հետ եօթը խորհուրդ, բայց ի հարկաւորութեան՝ երախային մահուան վտանգի առեն նաեւ աշխարհականի ձեռօք մկրտութիւն չեն տար։

Մկրտութեան ծէսն ու արարողութիւնը քիչ մը կը տարբերի որթոդոքսներէն. այսպէս՝ երախայն ամէն մէկ անգամ ջուրն ընկղմելուն աստուածային երից անձանց անունները զատ զատ կ'ըսեն, եւ իւրաքանչիւր՝ կնքահայր մկրտութեան ժամանակ ամէն մէկ ձեռքին մէջ ճրագ մը կը բռնէ։ Հայք մկրտութիւնը կը համարին նշան՝ Քրիստոսի երեքօրեայ մահուան։ Անմիջապէս մկրտութենէն ետեւ նոր մկրտեալն սուրբ մեռոնով կ'օծուի,[8] ինչպէս նաեւ որթոդոքսք անմիջապէս մկրտութենէ ետեւ կ'օծեն։

Արեւմտեան աստուածաբանից[9] այն խօսքն՝ թէ նոր մկրտեալ տղուն անմիջապէս Վերջին օծումն կը տրուի, ինչպէս նաեւ այն՝ թէ հայ աստուածաբանք զայս այնու կ'արդարացընեն, որ հայ ազգն ամէն տեսակ հալածանքներով ցրուեալ ըլլալուն՝ դիւրաւ կարելի չէ այս խորհուրդը մատակարարող քահանայ գտնել, սխալ է. վասն զի երբեք Վերջին օծում չի տրուիր աշխարհականաց։

Նորակնունք մանկան անմիջապէս Հաղորդութիւն կը տրուի հետեւեալ կերպով. քահանայն մէկ մատը կը թաթխէ բաժակին մէջ,

որուն մէջ է Քրիստոսի մարմինն ու արիւնն, եւ այն մատովը կը շօշափէ մանկան շրթունքն. եւ այս պատճառաւ այս հաղորդութիւնը "շրթնա-հաղորդութիւն" կ'անուանի[10]։

Ամուսնութեան խորհուրդն որթոդոքս եկեղեցիէն կը զանազանի միայն քանի մ'աղօթիւք[11], նոյնպէս ուրիշ արարողութիւն մ'ալ կը կատարուի, այսպէս՝ ամուսնացելոց վիզը մետաքսեայ չուան մը կ'անցուի, որոնց ծայրը կրծոց վրայ խաչաձեւ կը փակցուի մոմով, որ եւ նշան է երեքօրեայ ժուժկալութեան։ Երեք օր ետքը, նաեւ երբեմն ամուսնութեան յաջորդ օրը քահանայն աղօթքով կը քակէ այս կապերն։ Ցառաջագոյն — ինչպէս նաեւ այժմ յԱսիա — փեսին ձեռքը սուր մը կը տրուէր՝ իբրեւ նշան կնոջ վրայ ունեցած բացարձակ իշխանութեան։

Այրին իւր հանգուցեալ ամուսնոյն համար տարի մը սուգ կը բռնէ։

Հաղորդութիւն աշխարհականաց կը տրուի երկու տեսակով, բայց անխմոր հացիւ եւ անջուր (անապակ) սպիտակ կամ կարմիր գինւով[12], բայց նախ պէտք է որ մեղքերը խոստովանուի, որմէ ազատ են միայն — եօթը տարուընէ վար տղայք։

Ապաշխարանքը կը կատարուի պահօք եւ մեղաց խոստովանութեամբ։

Վերջին օծումն, ինչպէս ըսինք, աշխարհականաց երբեք չի տրուիր, այլ միայն քահանայից. երբ ծանր հիւանդ են, եւ մահուան անկողնոյ վրայ. իսկ աշխարհականաց վրայ քա-

4. Եօթնօրեայ պահք Վերացման սուրբ խաչի տօնէն յառաջ (Խաչի պաս)։

5. Եօթնօրեայ պահք Վերափոխման տօնէն յառաջ (Աստուածածնայ պաս)։ (Այստեղ մտադիր կ'ընեմ՝ որ Վերացման սուրբ խաչի եւ Վերափոխման տօներու նախատօնակին՝ երեկոյեան պաշտամունք [ռումաներէն denie կոչուած] կը կատարուին)։

6. Եօթնօրեայ պահք Ս. Յակոբայ Մծբնայ տօնէն յառաջ (Ս. Յակոբայ պաս)։

7. Եօթնօրեայ պահք՝ սահմանեալ ի Ս. Գր. Լուսաւորչէ ի յիշատակ դարձին Հայոց ի քրիստոնէութիւն, որ կը պահուի "Մաքսաւորաց եւ փարիսեցւոց" շաբթուն մէջ (Առաջաւորաց պաս)։

8. Եօթնօրեայ պահք Եղիա մարգարէին տօնէն յառաջ (Եղիական պաս)։

9. Եօթնօրեայ պահք ի յիշատակ Երեւման սուրբ խաչի ի լերին Վարագայ ի Հայս, որ կը պահուի Հոկտեմբեր ամսոյն մէջ Երեւման խաչի տօնէն երկու շաբաթ ետքը։

10. Եօթնօրեայ պահք Ս. Գր. Լուսաւորչի տօնէն յառաջ։

11. Եօթնօրեայ պահք, որ Ս. Սարգսի տօնէն յառաջ փետրուարին (Բարեկենդանի մէջ) կը պահուի (Ցիսնակաց պաս)։

12. Վերջապէս տասնշաբաթեայ պահք ամբողջ տարւոյն մէջ, բոլոր չորեքշաբթի եւ ուրբաթ օրերն ի միասին հաշուելով[17]։

Հայք "Սուրբ Աստուած" երգին կը յաւ-

ելուն “Որ վասն մեր խաչեցար[18], „ որ Աբրահամ կաթուղիկոսին հրամանաւ 596ին Դւինայ ժողովոյն մէջ ընդունելի եղաւ[19]։

Հայկական Նուիրապետութիւնը կը կազմեն՝ Եպիսկոպոսութիւն, Քահանայութիւն եւ Սարկաւագութիւն։

Եպիսկոպոսութիւնն երեք աստիճան ունի։ Արքեպիսկոպոս, Եպիսկոպոս եւ Վարդապետ[20]։

Վարդապետք Աստուածաբանութեան ուսուցչութեան աստիճան ունին, կրօնաւոր են, երբեմն թեմեր կը կառավարեն եւ եպիսկոպոսական պաշտամունք կը կատարեն։

Սարկաւագութիւնը երկու աստիճան ունի՝ Աւագ սարկաւագ, որ արտօնութիւն ունի Ս. Աւետարանը կարդալ[21] եւ սկիհն Նուիրատնէն ի խորան բերել, եւ Սարկաւագ։ Վերջապէս կան նաեւ ուրիշ կղերական փոքր աստիճաններ, ինչպէս՝ ջահընկալ, երդմնեցուցիչ եւ դռնապան[22]։

Դարձեալ արեւելեան Հայք կը զանազանեն “սպիտակ„ (աշխարհական) քահանայ, որպիսի են ամուսնացեալ քահանայք եւ սարկաւագունք, եւ “սեւ„ աբեղայ, որպիսիք են՝ եպիսկոպոսունք եւ վարդապետք[23]։

Հայ եպիսկոպոսունք 1181էն ի վեր եկեղեցական պաշտամանց մէջ լատինական թագ կը գործածեն, որպէս զի զանազանին վարդապետներէն եւ քահանաներէն, որոնք եկեղեցական պաշտամանց ժամանակ որթոդոքս եպիսկոպոսաց թագը (սաղաւարտ) կը կրեն։

Արեւելեան Հայոց եկեղեցական հանդերձն որթոդոքս եկեղեցւոյն հետ նոյն է, միայն թէ եպիսկոպոսունք չեն առնուր որթոդոքս եպիսկոպոսաց շուրջառն (Sacos), այլ քահանայից գործածած շուրջառն:

Քահանայն՝ որ Տէրտէր կը կոչուի, պատարագի ժամանակ կը գործածէ “Վակաս„ կոչուած ուսանոցն, որուն արտաքին կողմը 12 Առաքելոց պատկերը կայ, իբրեւ խորհրդական պատկեր Իսրայէլի 12 ցեղերու: Խորանի վրայ քահանայն հողաթափ կը հագնի, բայց “Սուրբ Աստուած„ էն յառաջ միայն մուճակով կը մնայ, եւ նաեւ զարդքն ու սաղաւարտը վար կ՚առնու[24]:

Արեւելեան հայ կղերն ունի երկայն գէս, մօրուք եւ արեւելեան հանդերձ, որթոդոքսներու պէս:

Քահանայն դասու մէջ միայն այն ատեն կրնայ միասին երգել՝ երբ փիլոն ունի վրան: Կապոյտ փիլոնը, որ հրամանաւ Կաթուղիկոսին՝ Արքեպիսկոպոսէն կը տրուի, առաջին աստիճան պատուաւորութեան կը նկատուի. երկրորդ բարձրագոյն աստիճանն է ոսկի շղթայով կրծոցխաչ. երրորդ եւ ամենաբարձր աստիճանն՝ որ քահանայի մը կարելի է տալ, է մանուշակ թաւշեայ եկեղեցական խոյր մը “Թասակ„ կոչուած, ռոմաներէն potcap կամ scufie.

Հայկական եկեղեցիք ճարտարապետութեան կողմանէ ճիշդ որթոդոքս եկեղեցեաց պէս շինուած են, եւ երգեհոն չունին. խորանն արեւելք ուղղուած է: Պատկերի որմը 3/4 մեդր

բարձր կանգնուած սեղանը չ'անջատեր եկեղեցիէն, այլ խորանին վրայ է, եւ այնչափ բարձր՝ որչափ որթոդոքս եկեղեցեաց խորանի կողմնական դռներն կ'ըլլան. սակայն խորանը շատ մեծ վարագուրով մը կը ծածկուի[25]: Եկեղեցեաց յատակը տախտակամած է եւ գորգով կամ նմանեօք ծածկուած. վասն զի Հաւատացեալք քանի մ'աղօթից ժամանակ մուճակով պէտք է որ մնան:

Պատարագիչ քահանայն իւր պատարագչութեան ամբողջ շաբաթը եկեղեցւոյ գաւթին մէջ, եւ կամ եթէ այս չկայ, եկեղեցւոյ քով սենեկի մը մէջ պիտի ննջէ[26]:

Արեւելեան Հայք մեռոնը Էջմիածնի կաթողիկոսէն կ'ընդունին[27]:

Պուքովինայի եւ Գալիցիոյ բովանդակ արեւելեան Հայերն Սուչավայի արեւելեան Հայ ժողովրդապետութեան կը վերաբերին[28]: Գէօլերթի ըսածը[29] թէ Սուչավայի արեւելեան Հայք երկու ժողովրդապետութիւն ունին, ճիշդ չէ. թէեւ ի Սուչավա երկու ժողովրդապետ կայ, սակայն ասոնք ժողովրդապետութեան մուտքը կը բաժնեն իրենց մէջ, եւ մէկը կ'ընդունի 1000 ֆլ. եկամուտ, միւսը 700 ֆլ.:

Սուչավայի արեւելեան Հայ ժողովրդապետութեան կը վերաբերի նաեւ Կուրա-Հոմոռուլուի գտնուող 10—15 տնէ բաղկացեալ Հայ գաղթականութիւնը, որ եւ այն տեղ հաստատուն նիւթէ շինուած գեղեցիկ եկեղեցի մ'ունի Ս. Գէորգ անուամբ, որուն դրամը գու-

մարուած է Հայոց մէջ, եւ 1867ին[30] շինուած եւ օրհնուած է։ Սուչավայի ժողովրդապետներէն մին այս եկեղեցւոյ մէջ տարին 5 անգամ պատարագ կը մատուցանէ, այն է 1. Ս. Գէորգայ տօնին, 2. Անմիջապէս Զատկէն եւ 3. Ծննդենէն ետեւ. 4. Համբարձման եւ 5. Աւետման։ Վերջին երկու տօներն են ի յիշատակ հիմնարկութեան Պարոն Քաբրիի տան որ ի Նեկուսդինա։

Սուչավայի արեւելեան Հայք տարին երկու անգամ Եկեղեցւոյ Նաւակատեաց տօն կը կատարեն, այն է՝ Ս. Յակոբայ օրն ի 29 Դեկտ. եւ ի տօնին Ննջման Ս. Կուսի (Վերափոխումն), Օգոստոսի 12ին եւ 18ին մէջ։

Հայք ունին 12 անդամէ բաղկացեալ եկեղեցական Հոգաբարձութիւն մը, որ ազգէն կ՚ընտրուի 3 տարւոյ համար[31], որոնցմէ 5 անդամ գլխաւոր յանձնաժողովը կը կազմեն, իսկ միւս 7 անդամն երկրորդական յանձնաժողովը, որոնց կանոնադրութիւնը 1872էն ի վեր Բարձրագոյն իշխանութենէ հաստատուած է։

Եկեղեցական Հոգաբարձութեան գործն է ընչից մատակարարութեան մէջ կարգաւորութիւն պահել եւ ամէն տեղ եկեղեցւոյ շահուն պաշտպան ըլլալ, հսկել ուսուցչաց վրայ՝ որոնք նաեւ եկեղեցւոյ երգեցիկքն են. ունի իրաւունք քահանայն պաշտօնէն կախելու, քահանայացու առաջարկելու ժողովրդեան՝ յընտրութիւն, եւ ընտրեալը առաջարկելու եպիսկոպոսին ի ձեռնադրութիւն։ Հոգաբարձութիւնը պարտական է

եւամեայ պաշտօնավարութենէն ետեւ ազգային ժողովին համար տալ։

Այս կերպով ընտրեալ քահանայացուն[32] Կ. Պոլիս կ'երթայ, ուր եկեղեցւոյ վարդապետութիւնն ու արարողութիւնները կ'ուսանի եւ Արքեպիսկոպոսէն քահանայ կը ձեռնադրուի։ Ձեռնադրութենէն ետեւ խիստ փականքի տակ հայրապետական եկեղեցին կը մնայ, 40 օր պահելով եւ հոգեւոր կրթութիւն ընելով, որմէ ետեւ իւր պաշտօնին կ'երթայ[33]։

Սուչավայի մէջ արեւելեան Հայք 4 դասարանով ծխական դպրոց մ'ունին, Ս. Գր. Լուսաւորչի անուամբ, որ 1824էն ի վեր ժողովրդապետական եկեղեցւոյ գաւթին մէջ գեղեցիկ շինութիւն մըն է, եւ հետեւեալ արձանագրութիւնը կը կրէ. "Այս դպրոցն հանդերձ ամենայն կազմածով շինուեցաւ ի փառս Աստուծոյ Հայ ազգին օգնութեամբ, ի հաւատս Լուսաւորչին, յօգուտ հայ մանկտւոյ քաղաքին Սուչավայ. Ցամի Փրկչին 1824, ի Թվ. Հայոց ՌՄՀԳ։„ Ցառաջագոյն հայ դպրոց մը կար ի Ջամքա նոյն տեղւոյ աբեղայից վարչութեան տակ. բայց Պուքովինայի գրաւման ժամանակ այս դպրոցն այն ժամանակի մոլտաւական տեղական դպրոցի շէնքը փոխադրուեցաւ։ Ամէն տեղ ուր Հայք կան, ծխական դպրոցներն տեղական ժողովրդապետէն կը կառավարուին, որոնք նաեւ կրօնի ուսուցիչ են. իսկ ի Սուչավա եւ ի Ռոմանիա[34] առանձին վարիչ մը կը կառավարէ։ Այս դպրոցներու ուսուցչական մար-

մինը կը կազմեն վարիչն եւ երկու ուսուցիչ, որոնք 300—700 Ֆլ. կ'ընդունին. այս դպրոցի մէջ՝ բաց ի ծխական դպրոցներու առարկաներէն՝[35] որ հայերէն կ'աւանդուին, նաեւ յատուկ ուսուցիչ մը գերմաներէն եւ ռումաներէն լեզուաց դաս կու տայ, եւ նաեւ հայկական եկեղեցական երգեցողութիւն կ'ուսուցանի:

Քահանային ապրուստը — որ արդէն իսկ կատարած պաշտամանց համար՝ թէեւ գին մը սահմանեալ չըլլայ, հարուստ հաւատացեալներէն լաւ վարձ կ'առնու — ինչպէս նաեւ ուսուցչաց, եկեղեցւոյ, դպրոցաց եւ 35—40 աղքատ հայ ընտանեաց ծախքերը կը հոգացուին Սուչավայի հայ եկեղեցւոյն վերաբերեալ Զամքայի եւ Միրդոքի[36] գրեթէ 470 եօխ ընդարձակ կալուածներէն, եւ նաեւ եկեղեցւոյ շէնքերու եկամուտքէն եւ հաւատացելոց նուէրներէն:

---

## ԳԼՈՒԽ Գ.

### *Պուքովինայի Հայոց աշխարհական կարգն ու սովորութիւնքն:*

Հայք իրենք զիրենք կ'անուանեն Հայ[1]. ունին մեծանիստ կերպարանք, սաստիկ սեւ մեծ ու կրակոտ աչք, սեւ մազ, աւելի գունատ քան թուխ գոյն. սակայն կը գտնուին, թէեւ ցանցառ, դեղնահեր Հայեր. ունին միջին կազմածք եւ զօրաւոր եւ լաւ աճած մարմին: Չեչաղէմ շատ ցանցառ է Հայոց քով: Կը կարծուի՝ որ Ծաղկի պատուաստը Հայոց ձեռօք Եւրոպա անցած է[2]:

Հայք ունին բոլորովին համեստ կեանք, բնակութիւն, հանդերձ եւ կերակուր. մեծապէս ժուժկալ են — վասն զի արբեալ Հայ մը տեսնել շատ ցանցառ բան է — չափաւոր եւ ողջախոհ, շատ հիւրասէր, առեւտրի մասնաւոր ձիրք ունին, շատ զուարճախօս են եւ ճարտասան:

Ցորեկն, մանաւանդ ճամբորդութեան ժամանակ՝ քիչ կ'ուտեն. իրիկուան արեւելեան սովորութեան համեմատ՝ բազմախորտիկ ընթրիք մը կ'ընեն:

Թէեւ Հայք սահմանաւորեալ եւ անջատեալ ազգութիւն մը կը կազմեն, սակայն ուրիշ ազգաց եւ կրօնից հետ շատ սիրով կը վարուին. նաեւ յաճախ անոնց հետ կ'ամուսնանան: Ամուս-

նութիւնք սովորաբար փեսին մօրմէն կը կառավարուին։

Հին ատենները Հայք երեք աստիճան պատուաւորութեան ունէին, զոր պատուաւոր ապրելով, աշխատութեամբ եւ ստացուածքով կարելի էր ձեռք բերել. առաջին աստիճան ունեցողներուն տիտղոսն էր “Տէր,„ երկրորդին՝ “Պարոն„ եւ երրորդ ու ամենաբարձրն՝ “Ամիրա։„

Հայք իրենց երկրին մէջ կը զբաղէին նաեւ ճարտարապետութեան, արձանագործութեան եւ նկարչութեան. բայց Եւրոպա գաղթելէն ետեւ՝ բաց ի խաղախորդութենէ եւ մորթ կարմրելու արուեստէն, կը զբաղէին միայն արեւելքի այլեւայլ ապրանքներու շահաբեր վաճառականութեան, որ են՝ գորգ, սաֆիանի եւ քորտովանի մորթ, համեմանք, մուշկ, խավիար, թաւափ, գինի, ձի, զէնք եւ այլն։ Նաեւ շատ անգամ իբրեւ թարգման արեւելեան լեզուաց կը գործածուէին։ Լեհաստանի, Հունգարիոյ եւ Մոլտաւիոյ վաճառաց միջնավաճառութիւն կ՚ընէին։ Հունգարիայէն կը բերէին սպիտակ եւ կարմիր փոկեղէն, ձիու ծածկ եւ նկարէն կաշեայ արկղներ. այս առեւտրով Սուչավայի Հայք մինչեւ ցայսօր կը զբաղին, թէեւ ոչ մեծ ձեռնարկութեամբք։

Ապրանքներն՝ արեւելեան ոճով կարաւաններով կը փոխադրուէին, առաջնորդուելով կարաւանապետէ մը։

Այս փոխադրութիւններն դէպ ի հեռաւոր արեւելք եւ այլ երկիրներ՝ դիւրացնաց կառ-

քերով չէն կատարուիր, այլ ձիերու վրայ, լաւ զէնքերով, ուտելեօք եւ ագանելեօք լի կաշեղէն քսակներով ամրացեալ։ Այս տեղ յիշենք նաեւ, որ յառաջագոյն Հարուստ Հայեր, — ինչպէս նաեւ բարձրաստիճան Ռումանացիք — մեծ տօնի օրերն Հիմակուան պէս փակեալ կառքերով չէին ճեմեր, այլ գեղեցիկ, սպիտակ, արաբական ձիերու վրայ։

Հայք կը զբաղէին նաեւ մսավաճառութեամբ, եզան եւ ոչխարի մսի չոր, կարծր եւ մխեալ երշիկներ կը շինեն, զորոնք իրենց ձեւին համեմատ "սալամի, սուճուգ, փոդքովէ„ կ՚անուանեն. նաեւ ոչխարի եւ եզան միս կ՚ապխտեն, զոր "պուժէնիցա„ կամ "փաստրմա„ կը կոչեն։ Այս տեսակ չոր մսեղէններ պատրաստելու ստիպուած էին իրենց յաճախակի հալածման ժամանակ. գաղթականութեան ճամբուն վրայ մսեղէն ուտել կարենալու համար՝ ստիպուած էին միսը չորցընել, աղել եւ մխել՝ որ չապականի։ Գիտեն նաեւ "սալխէ„ (սպանդանոց) մորթուած անասնոց ճարպէն ճրագ եւ օճառ շինել, որ գործոյն կ՚օգնեն նաեւ կանայք։

Վերջին ժամանակները կը զբաղէին միայն գիւղատնտեսութեան, արջառաբուծութեան եւ ի Վիեննա եզ փոխադրելու, արջառի տեսակներ մորթելու, պանիր շինելու եւ բամբակի առեւտրոյ. սակայն հետզհետէ վաճառականութեան ամէն ճիւղերը կը կորսնցընեն, վասն զի իրենց արուեստակից եւ աւելի բազմաթիւ ու հարուստ Հրեայք զիրենք կը գերազանցեն. որուն քիչ

նպաստ չ'ըներ նաեւ կրթութեան հետ ստացուած քնքոյշ կեանքը, մեծամեծ շռայլութիւնք եւ վաճառականութեան հետ կապուած նիւթական վշտակեցութենէ սոսկալի: Եւ սակայն մինչեւ ցայսօր Պուքովինայի առանձնական մեծ կալուածատերաց երրորդ մասը կը կազմեն Հայերն:

Այն սովորութիւնը՝ զոր ունէին Հայք առեւտուր ըրած ժամանակ, այն է՝ ծախողին կամ գնողին ձեռքը գրեթէ բռնաբար ճմլել եւ վերջէն միւս ձեռքով վրան զարնել, յաճախորդին համակրութիւնը վաստըկելու համար, նաեւ ուրիշ ազգաց քով՝ ի մասնաւորի Պուքովինայի Ռումէններու քով, մուտ գտած է, եւ ցայսօր կայ, իբրեւ յիշատակ այն օրերու՝ երբ Հայք երկրին բովանդակ առուտուրն ձեռք անցուցած էին:

Սուչավայի Հայոց բնակարանները — ինչպէս նաեւ իրենց թաղին փողոցները — մաքուր են, եւ սովորաբար լայն, եւ թէ՛ արեւելեան ոճով երկայն «էփէչ»ներով, եւ թէ՛ նորագոյն կարասեօք լաւ կահաւորուած են: Տներու յատակագիծը գրեթէ միշտ քառակուսի է, բաւական բարձր, սովորաբար պարտիզի մէջ, սուր եւ սեպ տանիքով. եւ մոլտաւեան ոճով՝ տան շուրջը փայտեղէն անցք մը կ'ըլլայ, եւ կամ՝ — եւ այս գրեթէ միշտ — ունին փայտէ կամ քարէ սիւներով յարկի տակ՝ տան առջեւ բաց տեղ, ուր տաք օրերուն կէսօրէն ետեւ թաւամազ տանտէրը՝ մէկ քանին նաեւ արեւելեան երկայն եւ բազմածալ հանդերձից մէջ փաթթուած՝ իւր

երկայն՝ քաղցրաբոյր եւ սաթագլուխ ծխափողը կը ծխէ եւ թաս մը խահուէ կ'առնու, իւր ըն-տանեաց կամ դրացեաց հետ կը շաղփաղփէ, կամ ճիշդ արեւելեան կերպով ժամանակ կ'ան-ցընէ։

Սիմիկինովիչ-Սդաուֆէի ըսածն, թէ Հայք իրենց տներն ու պարտէզները "ամենաբարձր տախտակներով" կը պարսպեն, ճիշդ չէ. բայց տարակոյս չկայ որ Հայք հասարակավարաց եւ ընկերավարաց բարեկամ չեն, եւ կը ջանան ճգամբք վաստկած ինչքն ու ստացուածքն պահել։

Պէտք է նաեւ յիշել՝ որ Սուչավայի Հայք ունին սեպհական ազգային [illegible] մը՝ "Անի" ա-նուամբ, որ կը գտնուի ժողովրդապետական ե-կեղեցւոյ շուրջը, նոյն եկեղեցւոյն վերաբերեալ վարձու տան մէջ, ուր հայերէն, գերմաներէն, ռումաներէն եւ գաղղիերէն լրագիրներ կան. ու-նին նաեւ սեպհական սրճանոց մը։ Շատ ցան-ցառ կը տեսնուի՝ որ Հայ մը ուրիշ սրճանոց մ'երթայ։

Հայոց խոհանոցը թէ՛ նորագոյն եւ թէ՛ ա-րեւելեան ազգային կերակուրներ կը մատակա-րարէ. կը սիրեն սաստիկ անուշահոտ՝ սաֆրա-նով եւ մեղրով պատրաստուած խմորեղէն մը, զոր "խաթլամէյքի" կը կոչեն, եւ մեղրի մէջ եփուած ու խորոված ընկոյզ խաշխաշով, զոր "տալլաւուզ" կ'անուանեն. դարձեալ՝ թթու կա-թէ եւ ազատքեղէ շինուած "յուռութով" պա-տրաստուած դեղնագոյն ապուռ մը, սաֆրանով եւ մսի ծեծածով պատրաստուած փողախմորի

ապուռ մը, մսի տապակ՝ բրինձով, տապակ գինձով, վերն յիշուած այլեւայլ տեսակ չոր եւ մխեալ համեղ մսեղէններ, եւ վերջապէս երկու տեսակ ցորենի հաց, որ կը կոչուի "լաւաշ" եւ "Թումուք": Հայուն տունն այց ելլող օտարականը կը գտնէ հոն ընդունելութիւն մը՝ արեւելեան սովորական քաղցրաւենեօք, որպիսիք են շաքարի եւ համեմունկի (vanille) մէջ եփուած պտուղներ՝ ռումաներէն „dulceț“ կոչուած, "րահաթ" (Rohat) եւ "տաքտաք հէլվա" կոչուած չէրղէնով:*

Սուչավայի Հայոց զգեստը մինչեւ վերջին տարիներս առ հասարակ արեւելեան էր, երկու սեռին ալ հաւասարապէս: Այրը կը հագնէր շապիկ եւ "ռայդուժ" կամ "շալվար" կոչուած սրնոց մը — ձմեռը գառնենիէ շինուած տաք սրնոց մը, ռումաներէն "մէշինի" կոչուած, որ եւ ցայսօր աստին անդին կ'երեւայ. — վրան յաճախ մետաքսեայ ծաղկենկար վերարկու մը, ռումաներէն "անթէրէօ" (տճ. էնթարի) կոչուած, որուն աջէն ձախ գոցուող կողերը թանկագին ծաղկենկար տաճկական վարշամակ (շալ) մը մէջքը պատատուելով գոց կը պահէ: Կուրծքին վրայ այս վերարկուին ծալքերուն մէջ գունաւոր՝ յաճախ մետաքսեայ թաշկինակ մը կ'ըլլայ: Առեւտրական ուղեւորութեանց ժամանակ այս վարշամակին տեղ կու գայ լայն "քէմէր" մը, որ է կաշեղէն քսակ մը՝ ապրանք գնելու դրամը կամ

* "Տաքտաք հէլվան„ խմորեղէն մըն է, որչափ գիտենք:

ծախուած ապրանքի գինը կրելու համար։ “Անթերէցի„ կամ “զոպոնի„ վրայ կը հագնին սովորաբար՝ մանաւանդ ամառը, լայն թեզանեօք կէս-վերարկու մը որ մինչեւ մէջքը կը հասնի եւ կեռասագոյն մետաքսէ կ’ըլլայ, զոր կը կոչեն “ֆէրմէնէա„ կամ ռումաներէն՝ “սուրդէյքա„. Նոյնպէս նոյնը կը հագնին ձմեռն ալ, միայն թէ այս “ֆէրմէնէային„ աստառը կանաչագոյն, բըրդեայ եւ թանկագին մուշտակ կ’ըլլայ։

“Ֆէրմէնէայի„ վրայ՝ տարուոյ ամէն եղանակներուն, կը հագնին բրդեայ լայն թեզանեօք վերարկու մը՝ որուն աստառն է աղուեսի մորթ, եւ մինչեւ ծնկերը կը հասնի, զոր կը կոչեն “տուլամա„ եւ կամ “քացավէյքա„, եւ ասոր վրայ ալ կտաւէ պճղնաւոր վերարկու մը՝ որ ամառը մետաքսէ, իսկ ձմեռը թանկագին մուշտակէ աստառ կ’ունենայ. աս ալ կը կոչուի “ճիւպպէ„։

Արանց ոտնամանն է դեղին սաֆիանէ հողաթափ, եւ տաճկական “եէմէնի„ կամ “պուշմաքէյ„։

Արանց խոյրն էր յառաջագոյն կարմիր ֆէս, որուն վրայ տաճկական վարշամակ մը՝ “չուլմա„ կոչուած, կը փաթաթուէր. իսկ նոր ժամանակներ կը դնեն խորունկ՝ վերին մասը մետաքսապատ կղբենւոյ խոյր. իսկ աղքատներն՝ գառնենւոյ բարձր խոյր։

Կանանց զգեստն էր առանց թեզանեաց երփնագոյն՝ նաեւ մետաքսեայ պճղնաւոր հանդերձ մը, որ վերէն ի վայր կը ծածկէր, որուն վրայ կու գայ ըստ աստիճանի եւ հարստութեան

իւրաքանչիւրոց՝ թաւշեայ, մետաքսեայ եւ կամ լոկ կտաւէ «քացավէյքա», որուն աստառը թանկագին մուշտակէ, աղուէսու եւ կամ գառի մորթէ կ'ըլլար, զոր եւ ցայսօր Հայ կանայք հաճութեամբ կը հագնին:

Կանանց գլուխը կը ծածկէր սպիտակ ֆէս մը, որուն վրայ մետաքսեայ եւ կամ լոկ կտաւեայ վարշամակ մը այնպէս կը նետուէր՝ որ եռանկեան ձեւով կենայ եւ մէկ անկիւնն ետեւը մէջտեղ ըլլայ: Իսկ ոտնամանն էր տաճկական դեղին սաֆիանէ հողաթափ:

Այս օրերս Հայոցմէ շատերը նորագոյն եւրոպական ձեւով կը հագուին. սակայն կը գտնուին նաեւ այնպիսիք, մանաւանդ ի Սուչավա, որ բազմածալ՝ երկայն արեւելեան հագուստը կը պահեն:

Ի վերջոյ յիշենք, որ մինչդեռ Պուքովինայի միացեալ Հայք լեհերէն կը խօսին եւ Լեհաց բարեկամ են, արեւելեան Հայք Ռումաններու բարեկամ են, եւ իրենց մայրենի լեզուին հետ՝ աւելի սիրով, մինչեւ իսկ ընտանեկան անձուկ շրջանին մէջ ռումաներէն կը խօսին, զոր շատ կատարեալ գիտեն:



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՅԵՂԻՆԱԿԻՆ

1 Barącz Sadok, Ryz dziejów Ormiańskich, Tarnopol, 1869, p. 61. Ընդհակառակն Lukacsi Christoforus իւր Historia Armenorum Transilvaniae, Viennae 1859, p. 12 կը գրէ․ “Թէոդորոս՝ կարմիր Ռուսիոյ Դուքսն 1062ին Նախիջեւանցի Հայերն իրեն օգնութեան կոչեց, եւ անոնց օգնութեամբը թշնամեացն յաղթելով՝ իւր իշխանութեան մէջ անոնց տեղ եւ արտօնութիւններ շնորհեց„։ — 2 Ersch u. Gruber, Allgemeine Encyclopädie, 5. Theil, p. 358, ծան. 18. — 3 Engel, Geschichte des ungarischen Reiches u. seiner Nebenländer, 4. Theil, 2. Abtheilung, Halle, 1804, p. 108. — 4 Barącz S. Żywoty sławnych Ormian w Polsce, Lwów, 1856, p. 133, 134. Տես նաեւ Schmidt, Suczawas historische Denkwürdigkeiten, Czernowitz 1876, p. 16 — 5 Տես Dr. Bischoff, Urkunden zur Geschichte der Armenier in Lemberg, im Archiv für die Kunde österreichischer Geschichtsquellen, Band 32, Wien, 1865, p. 10-12. — 6 Dr. Ficker, Hundert Jahre, Separatabdruck aus der statistischen Monatschrift, Wien, 1875, p. 8, ծան. 20։ — 7 Lukacsi, անդ, էջ 9։ — 8 Անդ, էջ 9, 10։ — 9 Hăşdĕu, Etymologicum magnum Romaniae, tom II. Fasc. II. Bucurescĭ, p. 1595 — 10 Suţu N., Notiţiĭ statistice asupra Moldoveĭ, Jaşĭ, 1852, p. 50; Czörning, Ethnographie der österreichischen Monarchie, Wien, 1857, Band I, p. 73; Dr. Silbernagel, Verfassung sämtlicher Kirchen des Orients, Landshut, 1865, p. 189; Neugebauer, Die Donau-Fürstenthümer, Breslau, 1854, I. Heft, p. 82. — 11 Suţu, անդ, էջ 50, 51, Silbernagel, անդ։ — 12 Neigebauer, անդ, էջ 83։ — 13 Pary G. այս մասին իւր Dissertationes historico-criticae, Vindobonae, 1775, էջ 170, Գլ. ԺԱ. գրքին մէջ կ'ըսէ․ “Անոնք Արեւելքէն Մոլտաւիա եկան 1418ին, եւ այն երկրին իշխաններէն ընդունուեցան Մոլտաւիոյ եօթն քաղաքաց մէջ, զորոնք նշանաւոր եկեղեցեաց, գերեզմանաց եւ տանց շինութեամբ

գեղեցկացուցին„։ Engel, անդ, էջ 121։ — 14 Lukacsi, անդ էջ, 13, 14, եւ Schmidt, անդ, 62։ — 15 Suțu, անդ, էջ 50, 51։ — 16 Անդ։ — 17 Dr. Goelert, Die Armenier in Europa u. insbesondere in Österreich-Ungarn, im "Ausland„ 1886, p. 480; Lukacsi, անդ, էջ 4։ Kurze Darstellung des gegenwärtigen Zustandes des armenischen Volkes, St. Petersbourg, 1831, Հոս կ՚ըսուի թէ Անի 1319ին կործանած է։ — 18 Lukacsi, անդ, էջ 130։ — 19 Hăşdĕu, անդ, էջ 1594—1599։ — 20 Xenopol, Originea Argeşuluĭ după dl. Hăşdĕu, ի թերթին՝ Archiva societățiĭ sciințifice şi literare din Jaşĭ, Jaşĭ 1889 Nr. 1. p. 64 — 21 Համանուն գիւղ մը կայ ցայսօր Վանայ ծովուն հիւսիսային եզերքն։ — 22 Schmidt, անդ, էջ 17։ — 23 Այս իշխանն իւր քեռւոյն՝ Լեհաց Վլատիսլաւ թագաւորին 1389ին 3000 արծաթի րուբլ փոխ տուաւ, բովանդակ Պոքուցիան եւ Հալիչը գրաւական առնլով։ (Xenopol, Istoria Romînilior, tom, II, Jassi 1889, p. 140—144) — 24 Barącz, Rys, p. 107. — 25 Barącz, Żywoty, p. 55. — 26 Suțu, անդ, էջ 52։ Neigebauer, անդ, էջ 83։ Silbernagel, անդ, էջ 189։ Տես նաեւ Melchisedek, Inscripțiunile bisericelor arminescĭ din Moldova, ի թերթին Analele Academieĭ române, seria II. tom, IV. sect. II. Bucurescĭ 1884, p. 6[illegible]—71. Papadopol-Calimach, Notiță istorică despre oraşul, Botoşanĭ, Հանեալ ի թերթէ Analele Academieĭ române, seria II. tom. IX, sect. II. Bucurescĭ 1887, p. 11—13, — 27 Melchisedek, անդ, էջ 69։ — 28 Xenopol. անդ, էջ 251։ — 29 Silbernagel, անդ, է 170, ընդ հակառակն Papadopol-Calimach (անդ, էջ 11, 12) կը հաստատէ թէ այն ժողովը 569ին գումարուած է։ — 30 Xenopol, անդ, էջ 251, ծան. 8։ — 31 Melchisedek, Cronica Huşilor, Bucurescĭ 1869, յաւելծ. էջ 24, 25, եւ Papadopol-Calimach, անդ, էջ 9, 10։ — 32 Pray, անդ, էջ 170, Գւ. ԺԱ։ Engel, անդ, էջ 121։ — 33 Անդ։ — 34 Pray, անդ, էջ 170, Գւ. ԺԱ, ընդ հակառակն Engel (անդ, էջ 121) միայն զՍուչավա եւ այլ 5 քաղաքներ, որոնց անունը չի տար, Հայոց բնակութեան սրաշեալ կը նշանակէ։ — 35 Xenopol, անդ, էջ 251, ընդ հակառակն Papadopol-Calimach, անդ, էջ 10, փինիկ. Cetatea albăյի կը յիշէ Եաշ։ — 36 Lucacsi, անդ, էջ 5, 52—57։ — 37 Kurze Darstellung, էջ 23, 24, ուր սակայն Կիլիկեան թագաւորութեան կործանման տարին 1375 կը դրուի։ Տես նաեւ Pichler's Geschichte der

kirchlichen Trennung, München 1865, Bd. II., p. 438, 457, — 38 Lukacsi, անդ. էջ 8: Istoria, dogmele, tradițiunile și liturgia bisericeĭ armene de lăsărit, Jassy 1874, էջ 42, 43. Pichler, անդ, էջ 457: — 39 Welzer und Welte's Kirchenlexicon, 2. Aufl. Bd. I, Freiburg, 1882, p. 1336. — 40 Անդ. էջ 1337: Kurze Darstellung, էջ 23: Lukacsi, անդ, էջ 57: Istoria, էջ 42, եւ Lukacsi, անդ, էջ 58: — 42 Հայերէն կը նշանակէ՝ “առաջին գալուստ կամ էջք.„ կ'ըսուի՝ թէ հոս Նոյայ որդիք տապանէն ելլելէն ետեւ՝ առաջին քաղաքը շինեցին, եւ թէ նաեւ Նոյ այստեղ իսկ իրեն կինն Նոյեմզարա ի Մարանդ թաղուած է (Neumann C. Fr. Geschichte der Übersiedlung von 40.000 Armeniern, Leipzig, 1834, էջ 20, ծան. 11, եւ Neugebauer, անդ, էջ 74): — 43 Istoria, էջ 42, 43: — 44 Istoria, անդ, Lukacsi, անդ, էջ 60: — 45 Աւրիկայ այդէն 1305ին դահէն հրաժարեցաւ եւ Փրանկիսկեան կրօնաւոր եղած էր: (Wetzer und Welte, անդ, էջ, 1338): — 46 Kurze Darstellung, էջ 22 եւ 23: — 47 Անդ: — 48 Papadopol-Calimach, անդ, էջ 10: Xenopol, անդ, էջ 232, 233: — 49 Dr. Ficker, Völkerstämme der österreichisch-ungaririschen Monarchie, Wien, 1869, էջ 26: — 50 Melchisedek, Cronica Hușilor, Appendix, p. 22. — 51 Ռումանիոյ Հայք մինչեւ ցայսօր կալուած գնելու իրաւունք չունին: Տես նոյն անձին “Memoar„ Եաշ 1889: — 52 Ստեփան Վոտայի վաւերագիրն այս մասին կ'ըսէ. “Իշխանութենէն եւ երկրէն՝ ժողովով հրաման եւ օրէնք տրուեցաւ անոնց առ հասարակ իրենց օրէնքը (կամ՝ կրօնքը) պահելու:„ (Melchisedek, անդ, էջ 25): — 53 Neugebauer, անդ, էջ 84: — 54 Engel, անդ, էջ 182, եւ Papadopol-Calimach, անդ, էջ 10: — 55 Demetrius Cantemir, Descriptio Moldaviae. Գլ. ԺԴ. էջ 243: — 56 Wickenhauser, Moldawa, Wien, 1862, էջ 63, 13: — 57 Xenopol, անդ, էջ 170—172: — 58 Wickenhauser, անդ, էջ 63, 64, 17: — 59 Անդ, էջ 65, 66, 24: — 60 Xenopol, անդ, էջ 174: — 61 Wickenhauser, անդ, 65, 23: — 62 Անդ, 68, 28: — 63 Schmidt, անդ, էջ 50: — 64 Lukacsi, անդ, էջ 13, 14, 65: Schmidt, էջ 62: — 65 Xenopol, էջ 378: — 66 Barącz, Rys, p. 171. — 67 Սաղովկ Պարոնչի (անդ), Շմիտի (անդ) եւ Romstorferի (Baudenkmale in der Bukowina,. “Wiener-Zeitung„, 1890, Nr. 13--15) յառաջ բերած թուականներն հետեւաբար սխալ են: — 68 Վերյիշեալ հե-

զինակներն առոր որդին զՊոկտան կը համարին եկեղեցւոյն հիմնադիր․ բայց անիկայ չէր կրնար ըլլալ․ վասն զի Պոկտան եթէ արդէն 1512ին ծնած էր, հազիւ քանի մը տարեկան պիտի ըլլար, ուստի իբրեւ մանկիկ կարող չէր եկեղեցիներ շինել տալ։ Սուչավայի Հայոց աւանդութիւնը կ'ըսէ, որ Տանովաքի ընտանիքը մինչեւ ցայսօր Կերլա կը գտնուի։ — 69 Հաճկատար (Հաճոյակատար) կը նշանակէ հաճոյք՝ խնդրուած կատարող։ — 70 Ինչպէս Սուչավայի առաջին հայ ժողովրդապետն եւ պատրիարքական աւագերէց Տէր Ղեւոնդ Յովհաննէս Քահանայ Բողովիչ ըսաւ՝ ուրիշ հին զանգակ մը, զոր Հայք Անիէն Մոլտաւիա գաղթած ժամանակ հետերնին բերած են, այժմ Սուչավայի հայ ժողովրդապետական եկեղեցւոյ մէջ կը պահուի՝ ջախջախած։ — 71 Արձանագրութիւնն է՝ "Շինեցաւ Թ․ 1521, Նորոգեցաւ Թ․ 1878"։ Տես նաեւ Romstorfer, անդ Nr. 15. — 72 Wickenhauser, Molda, Տետր 1․ Ա․ Հատ․ին, Չեռնովից․ 1886, էջ 66։ — 73 Melchisedek, անդ․, էջ 21—28։ — 74 Wickenhauser, անդ․, Xenopol, անդ․, էջ 531, 532։ — 75 Engel, անդ․, էջ 191։ Xenopol, Istoria Romînilor, Jassy, 1886, էջ 112։ — 76 Engel, անդ․, եւ Barącz, Rys, էջ 190։ — 77 Միհնաս Թոխաթեցի ժամանակակից հայ տաղասացն սոյն այս հալածանքը մանրամասն կը ստորագրէ հայերէն վիպասանական քանաստեղծութեան մը մէջ, որոյ բնագիրն Բարիզի մատենադարանին մէջ կը գտնուի։ — 78 Wickenhauser, անդ․, էջ 75, եւ Lukacsi, անդ․, էջ 66։ — 79 Տես նաեւ Neugebauer, անդ․, էջ 83։ — 80 Engel, անդ, էջ 192, 193։ Xenopol, անդ․, էջ 113։ — 81 Յամին 1868 ի Սերէթ Ակոբչիններու տապանաքարեր գտնուեցան եւ հռոմէական կաթողիկեայց գերեզմանատան որմոյն վրայ հաստատուեցան (Schmidt, անդ․ էջ 115։ Wickenhauser, Molda, Հատ․ Ա․ Չեռնովից, 1881, էջ 59, 242։ Prelicz V., Geschichte der Stadt Sereth, Czernowitz, 1886, p. 26). — 82 Սլաւերէն կը նշանակէ՝ բերդ, ամրութիւն։ Տես նաեւ Palade, O escursiune la Suceavă, Jassiĭ, p. 27. — 83 Պարոնչի ի Żywoty, էջ 5 յառաջ բերած տապանաքարի արձանագրութիւնն սխալ է․ ուղիղ ընթերցուածն է՝ "Այս է տապան Ակոբչին, որ է որդի Ամիրային, սա է շինող սուրբ տաճարին, հանգեաւ Հայոց ՌԾԱին (= 1602)։ — 84 Barącz, Żywoty, էջ 5։ — 85 Տես նաեւ Palade, անդ․, էջ 30։ — 86 Palade, անդ․, էջ 28, 29։ — 87 Անդ․, էջ 30։ — 88 Այս անուամբ Մոլտաւիոյ մետրապոլիտ մը կայ, բայց ատի-

կայ արդէն 1575ին վախճանեցաւ (Scriban Filaret, Istoria bisericească a Românilor, Jassy, 1871, p. 163) — 89 Palade, անդ. էջ 30—35։ — 90 Schmidt, անդ. էջ 137։ — 91 Engel, անդ. էջ 215։ — 92 Անդ. եւ Xenopol, անդ. էջ 114 եւ 115։ — 93 Schmidt, անդ. էջ 138։ — 94 Engel, անդ. էջ 216. ծան. 6. եւ Xenopol, Istoria Romînilor, Jassi, 1890, tom III, p. 94. — 95 Շմիտի ըսածն, անդ. էջ 139. թէ "Յովհաննէս իշխանն անոր համար "Հայ" ծաղրանունն առաւ, վասն զի Առաքելոց տօներուն միս կ'ուտէր Հայոց պէս," անոր համար անհիմն է, որ նախ՝ "Հայ" անունն ամենեւին ծաղրանուն չէ, եւ երկրորդ՝ որ Առաքելոց տօներուն նաեւ որթոդոքս եկեղեցին միս կ'ուտէ։ — 96 Barącz, Rys, էջ 116. եւ Żywoty, էջ 141. ուր Շմիտ, անդ. էջ 142 եւ 146. սխալմամբ իբրեւ Պոկտանովիչի յաջորդ Լեմպէրկի աթոռը նստած կը համարի Սուչավայի երկու հայ եպիսկոպոս, մին աւանց անունն յիշատակելու, եւ միւսն՝ զՅովհ. Յունանեան, եւ զայս՝ հազիւ 1598ին։ Սակայն ստոյգ է որ Պոկտանովիչին մի միակ Սուչավացի եպիսկոպոս մը յաջորդեց, այն է Յովհ. Յունանեան յամին 1582. որ 1598ին տակաւին Լեմպէրկի եպիսկոպոս էր։ — 97 Barącz, Rys, եւ Żywoty, անդ։ — 98 "Որ... (Պոկտանովիչ) հերձուածին մէջ հանապազորդող ազգին յամառութիւնը կոտրել չկրնալով" (Barącz Rys, p. 116.) — 99 Պոկտանովիչ 1579 Յունիս 28ին Լեմպէրկի եպիսկոպոս հաստատուած է։ (Barącz, անդ)։ — 100 Անդ. եւ Żywoty, էջ 68։ — 101 Այս տեղեկութիւնը կը պարտիմ Վիքէնհաուսէրի՝ ելեւմուից խորհրդականին (a D.) բարեկամութեանն։ — 102 Barącz Żywoty, էջ 71։ — 103 Տես նաեւ Romstorfer, անդ. թ. 15, եւ Schmidt, անդ. էջ 150։ — 104 Ոչ որպէս Ռոմշդորֆէր (անդ) եւ Շմիտ (անդ) սխալմամբ կը հաստատեն, թէ ոմն Սիմէոն Տէրուն այս եկեղեցին շինած ըլլայ։ — 105 Հայերէն կը նշանակէ՝ "Էջք Միածնին", վասն զի այն տեղն, ուր եկեղեցին ու վանքն է, Քրիստոս Հայոց առաքելոյն երեւցած է, կ'ըսուի (Neumann, անդ. էջ 20. ծան. 10)։ — 106 Barącz, Żywoty, էջ 191։ — 107 Barącz, Rys, էջ 119. Lukacsi, անդ. էջ 138 կ'ըսէ, որ Թորոսեվիչ 1626ին եպիսկոպոս ձեռնադրուած է։ — 108 Lukacsi, անդ. Barącz, Rys, էջ 118. 120. եւ Żywoty, էջ 191 332։ — 109 Kurze Darstellung, էջ 27. 28։ — 110 Barącz, Rys, եւ Żywoty, անդ։ — 111 Kurze Darstell. անդ։ — 112 Լեմպէրկի Հայոց եպիսկոպոսաց տրուած եւ իրենց

գործածած տիտղոսն էր. «Աստուծոյ եւ Առաքելական աթոռոյ շնորհիւ Արքեպիսկոպոս Հայոց Լէմպէրկի, եպիսկոպոս Վալաքիոյ եւ Մոլտաւիոյ եւ ամենայն Հայոց ընդ ամենայն թագաւորութիւնն Լեհաց»: (Lukasci, անդ. էջ 68. 139:) — 113 Lukasci, անդ. էջ 66. եւ Schmidt, անդ., էջ 161. 177: — 114 Wickenhauser, Molda, Bd. I. p. 59. — 115 Schmidt, անդ. էջ 176 եւ Barącz, Rys, էջ 167, որ Մոլտաւիացի եւ Թրանսիլվանիացի Հայոց ի Սդանիսլաւ հաստատուելու տարին կը դնէ 1662: — 116 Schmidt, անդ. էջ 118: 117 Lukacsi, անդ. էջ 66: — 118 Schmidt, անդ.: — 119 Lukacsi, անդ., էջ 16 կ'ըսէ՝ որ Հայք 1672ին Տաճկաց երկիւղէն Թրանսիլվանիա եկան: — 120 Pray, անդ. էջ 171. Engel, անդ., էջ 276. Lukacsi, անդ. էջ 16. 133: — 121 Engel, անդ., էջ 276: — 122 Dr. Ficker, Hundert Jahre էջ 8. 20 կ'ըսէ՝ որ Հայոց եկեղեցական միաբանութիւնն 1689ին ամբողջապէս կատարեցաւ. իսկ Simiginowicz-Staufe, Die Völkergruppen der Bukowina, Czernowitz, 1884, էջ 201, որդէն 1684ին կատարուած կը դնէ: — 123 Մինասայ Լատին եկեղեցւոյ հաւատքը դաւանելուն վրայ այսպէս կը գրէ Վարդան Արքեպիսկոպոսն. «Մինաս Վ. Նւգոկիացի Ճիլիդատար-Օղլու (Սանէփ. Ռոշքա. Ժամկդր. Զիլիֆտար-օղլու) անուանեալ՝ եպիսկոպոս Մոլտաւիոյ ինծի հետ եկաւ Լեմպէրկ եւ Ինոկենտիոս Ժի նուիրակին՝ Բոլլավիչինի կարդինալին առջեւ կաթողիկէ հաւատքը դաւանեցաւ յամի Տեառն 1686. Հայոց թուին 1135.» Lukacsi, անդ. էջ 68: — 124 Barącz, Rys, էջ 193: — 125 Pray, անդ., էջ 170. 171: — 126 Barącz անդ., էջ 130, եւ Lukacsi, անդ., էջ 68, 139 եւ 140: — 127 Lukacsi, անդ., էջ 76, ծան 1. 9. 2. 5: — 128 Schmidt, անդ., էջ 177: «Նոյնպէս ստոյգ է որ աղջկունք եկեղեցի չեն երթար բայց միայն կաղանդին, Աւետման եւ Վարդավառին,» Lukacsi, անդ. էջ 78, ծան. 7: — 129 Barącz, Żywoty, էջ 168: — 130 Այս ձեռագիրն Միւնխէնի թագաւորական գրատունն է, եւ վերնագիրն է՝ Breve relatione della stato, principii et progressi della missione Apostolica agli Armeni di Polonia e Vallachia sin'al 1-mo Aprile 1669. per il Padre Luigi Maria Pidou (Papadopol-Calimach, անդ. էջ 13): — 131 Տես Wickenhauser, անդ., էջ 59. եւ Prelicz, անդ. էջ, 16. 26 եւ 27: — 132 Papadopol-Calimach, անդ.: — 133 Schmidt, անդ. էջ 186 եւ 187. եւ Wickenhauser, Bochotin, Wien, 1874. էջ 40. 41: — 134 Schmidt, անդ. — 135 Այն ժամանակ Զամքա

տակաւին ամրոց էր, թէեւ Քանդաքուզին իշխանն յամին 1675 անօթութեամբ ձեռք բերած ամրոցն յարդնել եւ խոտով լեցուցած եւ այրած եւ վառօդով պայթեցուցած էր (Wickenhauser, անդ, էջ 40)։ — 136 Palade, անդ. էջ 33, 34 եւ Wickenhauser, անդ, էջ 42։ — 137 Lukacsi, անդ, էջ 70, Barącz, Rys, էջ 130։ 138 Pray, անդ, էջ 171։ Lukacsi, անդ, էջ 71 յառաջ կը բերէ Լեմպէրկի Արքեպիսկոպոսին՝ Վարդան Յունանեանի առ Եւդոկիացին գրած մէկ թուղթն այս մասին, ուր կ'ըսէ. "Այս 1691ին Տէր Եղիա Սուչավացի, Մէտրուլ անուանեալ, Մոլտաւիոյ աւագերէցն, հոս ի Լեմպէրկ, իմ Վարդան Յունանեան՝ Լեմպէրկի Արքեպիսկոպոսիս առջեւ կաթողիկէ հաւատքը դաւանեցաւ։" — 139 Lukacsi, անդ. էջ 18։ 140 Schmidt, անդ. էջ 192, 193։ — 141 Այսօրուան հայ ուխտատեղին Հաճկատար կամ Միրդոքա։ — 142 Barącz, Żywoty, էջ 240, 436, եւ Rys, էջ 193, զոր Schmidt, անդ սխալմամբ "Ներսէսովիչ" կ'անուանէ։ — 143 Engel, անդ, էջ 286։ — 144 Wickenhauser, անդ, էջ 90 եւ Lukacsi, անդ. էջ 18։ — 145 Barącz, Żywoty, էջ 81, ոչ՝ ինչպէս Schmidt, անդ, էջ 197, սխալմամբ "Ստեփան" կ'անուանէ։ — 146 Barącz. անդ։ — 147 Wickenhauser, Die deutschen Siedlungen in der Bukowina, II. Band, Czernowitz, 1887, p. 26. — 148 Եւ ոչ ընտանիք, ինչպէս սխալմամբ կը հաստատէ Simiginowicz-Staufe, անդ. էջ 127 տես նաեւ Biedermann, Die Bukowina unter österreichischer Verwaltung 1775—1875 2 Aufl. Lemberg, p. 64, եւ Dr. Ficker, անդ, էջ 5, ծան 8։ — 149 Dr. Ficker, անդ էջ 11։ — 150 Dr. Polek, Die Erwerbung der Bukowina durch Oesterreich, Czernowitz. 1889, էջ 54։ — 151 Bidermann, անդ։ — 152 Ամ 1781, Մատն Ը. Տետր. 45, էջ 145։ — 153 Հրեաներն հարուստ Հայերու "Ամաղեկացի" անուն կու տային (Dr. Ficker, անդ. էջ 21, ծան, 81) — 154 Bidermann, անդ։ — 155 Wickenhauser, Moldawa, Բ. Մասն, Չեռնովից, 1877, էջ 53։ — 156 Bidermann, անդ, էջ 65։ — 157 Simiginowicz-Staufei անդ, էջ 128 հակառակ խօսքն, ինչպէս նաեւ այն՝ թէ Սուչավայի Հայերն զինուորական վարչութեան ժամանակ երկու եկեղեցի շինած ըլլան, սխալ է։ — 158 Նաեւ Schmidt, անդ, էջ 218։ — 159 Palade, անդ, էջ 42։ — 160 Այս եկեղեցին արձանագրութեան համեմատ 1475ին Ստեփան Մեծ իշխանէն իշխանական պալատին եւ Fürstenstrasse (այն փողոցն՝ որ այժմ եկեղեցւոյ հիւսիս-արեւելեան կողմը կը հանէ)

շինուած է (Palade, անդ. էջ 41)։ — 161 Hormuzachi Eudoxius, Documente privitoare la Istoria Românilor, Bucurescĭ 1876, Bd. VII, p. 315—320. — 162 Bidermann, անդ. էջ 65։ — 163 Dr. Goelert, Die Armenier in Europa und insbesondere in Oesterreich-Ungarn, Ausland, 1886, p. 491. — 164 Wickenhauser, Die deutschen Siedlungen, tom II, p. 170. — 165 Rohrer, Ueber die armenischen Bewohner der österreichischen Monarchie, in Liechtenstern's Archiv für Geographie und Statistik pro 1806 II Th. Wien, p. 3. — 166 Barącz, Rys, p. 171. — 167 Dr. Goelert անդ. 168 Lukacsi, անդ. էջ 129—131։ — 169 Wickenhauser, անդ. էջ 177, ուր Dr. Goelert, անդ. էջ 489 Քորպուլէի Աուստրիայի մէջ գործածներն 1795ին կը դնէ։ — 170 Wickenhauser, անդ։ — 171 Barącz, Rys, էջ 171։ — 172 Անդ. էջ 172, 199։ Dr. Goelert, անդ. էջ 490։ — 173 Barącz, անդ. էջ 172։ — 174 Dr. Goelert, անդ։ — 175 Dr. Ficker, անդ. էջ 11 Dr. Goelert, անդ. էջ 490. — 176 Bidermann, անդ. էջ 23. — 177 Անդ. էջ 65. Dr. Ficker, անդ. էջ 8 եւ Simiginowicz-Staufe, անդ. էջ 128. — 178 Wickenhauser, անդ. էջ 177. — 179 Bidermann, անդ. էջ 73 եւ 74։ — 180 Անդ. էջ 65, 66, եւ Barącz, Żywoty, էջ 5։ — 181 Անդ. էջ 7, 8, 28, 60, 175, 188, 201, 233, 234, 257, 258, 281։ — 182 Անդ. էջ 287, 395։ — 183 Bidermann, անդ. էջ 65, 66։

1 Այս սիւնհոդոսը մերժեցին հրամանաւ իւրենց Աբրահամ կաթողիկոսին 596ին ի Դուին գումարած ժողովոյն մէջ։ Տես Dr. Silbernagel, անդ. էջ 169, 170. Dr. Ficker, անդ. էջ 11, ծան. 25։ — 2 Ersch' und Gruber's Encyclopädie, I. Section, I. Theil, p. 359. — 3 Istoria ... bisericeĭ armene ... p. 24, 25, 27, 28, 29, 33, 40; Pichler, Geschichte der kirchlichen Trennung, Bd. II, p. 473։ — 4 Անդ էջ 79—126։ — 5 Տես Հանգանակ ուղղափառաց յունարէն եւ գերմաներէն ի փոքրիկ քրիստոնէականի յոյն կաթողիկեայ եւ արեւելեան եկեղեցեաց, Վիեննա, 1878, էջ 20—23. — 6 Dr. Aschbach, Allgem. Kirchenlexikon, Frankfurt am Main 1846, Bd 1, p. 131. Kurze Darstellung ... p. 55. — 7 Aschbach, անդ, էջ 331։ — 8 Istoria bis. arm. p. 126. Kurze Darstellung, p. 62. — 9 Herzog, անդ, էջ 504։ Aschbach. անդ, էջ 332։ Տես նաեւ Kurze Darstellung, էջ 62։ — 10 Istoria, էջ 126։ Lukacsi, անդ, էջ 76՝ Ծան. 5, եւ էջ 77, ծան. 5։ Kurze Darstellung, էջ 62—64։ — 11 Istoria, էջ 126։ —

12 Անդ, Lukacsi, անդ, էջ 76. ծան. 10։ Wetzer u. Welte, անդ, էջ 1343։ Kurze Darstellung, էջ 64։ Neigebauer, անդ, էջ 82։ — 13 Istoria... անդ, էջ 126, 127. ծան. 2։ Lukacsi. անդ, էջ .72, ծան. 2, էջ 76, ծան. 6, էջ 77 ծան. 6։ Ersch u. Gruber անդ, էջ 359։ Aschbach, անդ, էջ 332, 335։ — 14 Անահիտ եւ Նանէ = Վենուս, տես Strabo, XI, XIV, 16. — 15 Տես նաեւ Silbernagel, անդ 198։ — 16 Istoria... էջ 128։ — 17 Անդ էջ 127 եւ 128, մինչդեռ Սիլպէրնակէլ անդ կ'ըսէ՝ թէ Հայք բաց ի մեծ պահոց՝ ունին ուրիշ չորս ութօրեայ պահք ալ, այն է՝ Պահք Ծննդեան, Աւետման, Վերափոխման եւ Ս. Լուսաւորչի։ — 18 Meletie, Istoria bisericească հատ. Դ. էջ 170. Istoria.., էջ 33 եւ 34. Lukacsi, անդ, էջ 77 ծան. 11։ — 19 Silbernagel, անդ էջ 170։ — 20 Silbernagel անդ կ'ըսէ՝ թէ հայ եպիսկոպոսութիւնն ունի երեք աստիճան, այն է՝ Եպիսկոպոս, Արքեպիսկոպոս եւ Մետրոպոլիտ կամ Պատրիարք (կաթողիկոս)։ — 21 Kurze Darstellung, .. էջ 42։ — 22 Անդ։ Silbernagel, անդ էջ 171 եւ Aschbach, անդ էջ 333 եւ 334։ — 24 Istoria... էջ 129 եւ Kurze Darstellung... էջ 41։ — 25 Istoria... էջ 129—131 եւ Silbernagel, անդ, էջ 196։ — 26 Անդ եւ Aschbach, անդ էջ 334։ — 27 Aschbach, անդ կը հաստատէ՝ թէ պատարագիչ քահանայն պատարագչութեան օրերն եկեղեցւոյ մէջ կը ննջէ, բայց այս ճիշդ չէ։ — 28 Kurze Darstellung... էջ 38—40. — 29 Կալիցիոյ մէջ միայն մի միակ արեւելեան հայ ընտանիք կայ, այն է Եաքուպենց ի Լուբքովցէ, Սնեատինի շրջանին մէջ։ — 30 Էջ 530։ — 31 Տես նաեւ Romstorfer, անդ էջ Թ. 15։ — 32 Silbernagel, անդ էջ 197։ — 33 Aschbach, անդ էջ 334։ — 34 Silbernagel, անդ էջ 194 եւ Kurze Darstellung... էջ 41, 42։ — 35 Տես նաեւ Neigebauer անդ, էջ 84։ — 36 Barącz, Rys, էջ 200 կ'ըսէ, թէ այս դպրոցին մէջ կարդալ գրելէն եւ շարական երգելէն զատ՝ ուրիշ բան չի սորվեցուիր, որ ճիշդ չէ։ — 37 Հայոց կալուածն մինչեւ Ս. Իլիէ կը տարածուէր. սակայն ժամանակին իշխաններն այն ժամանակի օրինաց համեմատ՝ որ քաղաքաց արուարձանքն ու երկիրներն տեղական իշխանին կը վերաբերին, մասն մասն նուիրեցին Ս. Իլիէ վանքին, թէեւ Հայք երկայն ատեն դատ վարեցին։ (Այս տեղեկութիւնը կը պարտիմ Ա. Վիքէնհաուսերի բարեկամութեան։)

1 Rohrer, անդ։ — 2 Անդ, էջ 5։

---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ . . . . . ֆր. 1.25
Բ. ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ ՏԻՒԶԵԱՆՑ . . . . . . ֆր. 1.—
Գ. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ . . . . . . . ֆր. 1.25
Դ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ ֆր. —.85



